## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրության ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4
ԱՊՐԻԼ
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути) — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «Դասախոսական պրոպագանդայի վիճակի և դրա բարելավման միջոցառումների մասին»:**

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշել է, որ վերջին տարիներին կուսակցական կազմակերպությունները հասել են դասախոսական պրոպագանդայի բարելավման: Այն խոր արմատավորվել է երկրի հոգևոր կյանքում, դարձել սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի, կենսական ակտիվ դիրքորոշման, գաղափարաքաղաքական ու բարոյական բարձր հատկությունների ձևավորման ազդու գործոն, կարևոր դեր է խաղում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման գործում:

Դասախոսական աշխատանքում գլխավոր տեղը գրավում են մարքս-լենինյան տեսության պրոպագանդումը, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության, ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերի, ՍՍՀՄ նոր Սահմանադրության, ընկեր Լ. Ի. Բրեժնևի և կուսակցության մյուս ղեկավարների աշխատություններում մշակված՝ գիտական կոմունիզմի հրատապ պրոբլեմների խոր պարզաբանումը: ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատում սովետական գիտնականների, մասնագետների, ուսուցիչների, բժիշկների, իրավաբանների, մշակույթի գործիչների, կուսակցության, պատերազմի և աշխատանքի վետերանների ազնիվ աշխատանքը քաղաքական ու գիտական գիտելիքների պրոպագանդման ասպարեզում, որտեղ ցայտունորեն դրսևորվում են սովետական մտավորականության անխզելի կապը ժողովրդի հետ, նրա լիակատար նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ շեշտվում է, որ զարգացած սոցիալիզմի, խորացող գիտատեխնիկական հեղաշրջման, համաշխարհային ասպարեզում գաղափարական պայքարի բարդացման պայմաններում անհրաժեշտ է առավել կատարելագործել դասախոսական պրոպագանդան, բարձրացնել դրա դերը կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում: Կուսակցական շատ կոմիտեներ դեռևս պատշաճ հաստատակամություն չեն ցուցաբերում, որպեսզի դասախոսական պրոպագանդայի թափը ուղեկցվի նրա գաղափարատեսական մակարդակի, հարձակողականության անշեղ բարձրացմամբ: Միշտ չէ, որ հաշվի են առնվում սովետական մարդկանց կրթվածության, իրազեկության և կուլտուրայի մակարդակի բարձրացումը, նրանց գիտելիքների մշտական համալրման ու նորացման, միջազգային կյանքի և երկրի հասարակական-քաղաքական զարգացման հրատապ պրոբլեմներին գործնականորեն արձագանքելու նրանց պահանջմունքը:

Լուրջ թերություններ կան դասախոսների պատրաստման և որակավորման բարձրացման, նրանց գիտամեթոդական անհրաժեշտ օգնություն ցույց

տալու աշխատանքում: Բնավ էլ ոչ բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ու տնտեսական ղեկավարներն են կանոնավոր հանդես գալիս աշխատավորների, դասախոսական ակտիվի առջև՝ ներքին ու միջազգային կյանքի հարցերի, քաղաքի, շրջանի, կոլեկտիվի հերթական խնդիրների շուրջ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին պարտավորեցրել է ապահովել դասախոսական պրոպագանդայի մակարդակի հետագա բարձրացումը, այն համարելով որպես աշխատավորների կոմունիստական դաստիարակության, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման, զարգացած սոցիալիզմի հնարավորությունների իրականացման գործում մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը զարգացնելու միջոց:

Դասախոսական պրոպագանդան կոչված է ծառայելու սովետական մարդկանց բարձր գաղափարայնության, կուլտուրայի, քաղաքացիական պատասխանատվության, աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի, բարոյական անաղարտության, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, հայրենիքը պաշտպանելու պատրաստակամության ոգով դաստիարակմանը, խորապես և համակողմանիորեն պարզաբանելու մարքս-լենինյան տեսությունը, ՍՄԿԿ-ի ստեղծագործական ավանդը նրա զարգացման մեջ, ներքին և արտաքին քաղաքականության հրատապ հարցերը, ՍՍՀՄ նոր Սահմանադրության բովանդակությունը, նպաստելու սոցիալիստական մրցության, ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը, առաջավոր փորձի տարածմանը: Այն պետք է սիստեմատիկաբար մղվի բոլոր կոլեկտիվներում, բովանդակությամբ լինի խորապես գիտական և ձևով՝ գայտուն, անհաշտ ու հարձակողական՝ բուրժուական, մաոյական ու ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում, սպառիչ պատասխաններ տա կարևոր և սուր հարցերին, հասարակական կարծիքի ձևավորման և ուսումնասիրման արդյունավետ միջոց ծառայի:

Ուշադրություն է հրավիրվել երիտասարդության շրջանում դասախոսական աշխատանքն ուժեղացնելու անհրաժեշտության, աճող սերնդին կոմունիստական իդեալների ոգով, կուսակցության և ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթներով դաստիարակելու վրա: Երիտասարդության համար կազմակերպվող ելույթներում ավելի լայնորեն ներգրավել կուսակցության և աշխատանքի վետերաններին, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների մասնակիցներին:

Հանձնարարված է ըստ ամենայնի զարգացնել ժողովրդական համալսարանները, հասարակական-քաղաքական ընթերցումները, լեկտորիումները, դասախոսությունների ցիկլերը և այն մյուս ձևերը, որոնք ունկնդիրներին սիստեմատիկ գիտելիքներ են տալիս որոշակի բնագավառի վերաբերյալ, նպաստում աշխատավորների որակավորման բարձրացմանը, մասսաների հասարակական ակտիվության զարգացմանը: Այդ նպատակով առավել լրիվ օգտագործել քաղաքական լուսավորության և գիտատեխնիկական պրոպագանդայի տները, ակումբները, մշակույթի պալատները, գրադարանները, զբոսայգիները, հեռուստատեսության և ռադիոյի հսկայական հնարավորությունները:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմներն ու շրջկոմները պետք է բարձրացնեն կուսակցական կոմիտեների, դասախոսական խմբերի աշխատանքի մակարդակը, ուժեղացնեն նրանց կողմնորոշիչ ազդեցությունը դասախոսական պրոպագանդայի ընդհանուր վիճակի, դասախոսական կադրերի ուսուցման վրա: ՍՄԿԿ Կենտկոմի բաժիններին հանձնարարված է կանոնավոր կերպով անցկացնել հատուկ դասախոսների համամիութենական սեմինարներ, ամփոփել և վերլուծել դասախոսությունների ժամանակ տրվող հարցերը:



Կուսակցական կոմիտեներին առաջարկված է ուժեղացնել «Գիտելիք» համամիութենական ընկերության կազմակերպությունների ղեկավարումը, այն համարելով գաղափարական աշխատանքի սիստեմի կարևոր օղակ, կուսակցության ակտիվ օգնական աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում: Հասնել այն բանին, որ «Գիտելիք» ընկերության յուրաքանչյուր կազմակերպություն դառնա ստեղծագործական կոլեկտիվ, որն ընդունակ լինի քաղաքական ու գիտական գիտելիքների պրոպագանդան վարել բարձր մակարդակով: Դասախոսներին կանոնավոր կերպով իրազեկ պահել կուսակցական և սովետական մարմինների որոշումների, սոցիալ-տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների մասին: Ուժեղացնել շրջանային ու սկզբնական կազմակերպությունների դասախոսներին ցույց տրվող օգնությունը:

«Գիտելիք» ընկերության ուշադրությունը կենտրոնացնել դասախոսական աշխատանքի որակը բարձրացնելու, նրա գիտական հիմունքները զարգացնելու և ամրապնդելու, դասախոսների պատրաստման և որակավորման բարձրացման սիստեմ ստեղծելու վրա: Ըստ ամենայնի զարգացնել աշխատանքի հասարակական հիմունքները, բարձրացնել գիտամեթոդական խորհուրդների և սեկցիաների պատասխանատվությունը դասախոսական պրոպագանդայի բովանդակության և թեմատիկ ուղղվածության համար: Բարելավել դասախոսների ապահովումը տեխնիկական միջոցներով, դիտողական պարագաներով, տեղեկատու նյութերով: Անցկացնել անդամատոմսերի փոխանակում՝ որպես «Գիտելիք» ընկերության ամբողջ գործունեությունը բարելավելու, նրա հեղինակությունը բարձրացնելու միջոց:

ՀԱՄԿԽ-ին, ՀամԼԿԵՄ Կենտկոմին, սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչությանը, դասախոսական պրոպագանդայով զբաղվող ստեղծագործական միություններին, գերատեսչություններին և հասարակական կազմակերպություններին հանձնարարված է «Գիտելիք» համամիութենական ընկերության հետ սերտ փոխգործողությամբ մշակել և իրականացնել միջոցառումներ դասախոսական պրոպագանդայի կոորդինացումը խորացնելու, նրա կազմակերպումն ու բովանդակությունը է՛լ ավելի բարելավելու, արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ:

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ճյուղային ակադեմիաներին, ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, մյուս մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է ըստ ամենայնի օժանդակել գիտնականների, դասախոսների, ժողովրդական տնտեսության մասնագետների, առաջավոր բանվորների ու կոլտնտեսականների ներգրավմանը դասախոսական աշխատանքի մեջ: Դասախոսական պրոպագանդային նրանց մասնակցությունը համարել որպես քաղաքական խոշոր կարևորություն ունեցող գործ: Դրա համար անհրաժեշտ պայմաններ ստեղծել, խրախուսել դասախոսական աշխատանքը: Կադրերի վերատեստավորման ժամանակ հաշվի առնել նրանց մասնակցությունը գիտելիքների պրոպագանդմանը: Պրոպագանդիստական երկարամյա գործունեության համար լավագույն դասախոսներին ներկայացնել հանրապետության մշակույթի վաստակավոր աշխատողի պատվավոր կոչման շնորհման:

Մշտական ուշադրություն դարձնել երիտասարդության թվից դասախոսական կադրերի պատրաստմանն ու դաստիարակմանը: «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը, ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը, ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, ՀամԼԿԵՄ Կենտկոմին հանձնարարված է ընդլայնել երիտասարդ դասախոսի դպրոցների ցանցն ու բարելավել դրանց աշխատանքը, դրանց համար մշակել ծրագրեր և ուսումնական պլաններ, երիտասարդ մասնագետներին, ասպիրանտներին և ուսանողներին ավելի ակտիվորեն ներգրավել դասախոսական գործունեության մեջ:

«Գիտելիք» ընկերությունը, գիտատեխնիկական ընկերությունները, գյուտարարների ու ռացիոնալիզատորների ընկերությունը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ միասին կոչված են միջոցներ ձեռնարկել բնագիտական և գիտատեխնիկական պրոպագանդայի հետագա զարգացման ուղղությամբ, ուժեղացնել այդ բնագավառում գործունեության կոորդինացումը: Նախատեսվում է ընդլայնել գիտատեխնիկական պրոպագանդայի միջճյուղային տների ցանցը, առավել արդյունավետորեն օգտագործել դրանց հնարավորությունները բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների որակավորման բարձրացման, արտադրական առաջավոր փորձի տարածման համար:

ՍՍՀՄ Հրատպետկոմին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը հանձնարարված է բարելավել գիտահանրամատչելի գրականության որակը:

Ապահովել տպագրվող նյութերի թեմատիկայի հրատապությունը, գաղափարաքաղաքական ու գիտական բարձր մակարդակը, օպերատիվ կերպով արձագանքել ներքին և միջազգային կյանքի կարևորագույն իրադարձություններին: Հատուկ ուշադրություն դարձնել դասախոսներին օգնող գրականության՝ գրքույկների, թեմատիկ մատենաշարերի, մեթոդական ձեռնարկների, ինչպես նաև այն նյութերի հրապարակմանը, որոնք փաստարկներ ու փաստեր են պարունակում բուրժուական պրոպագանդայի համոզիչ մերկացման համար: Անցկացնել գիտահանրամատչելի լավագույն աշխատությունների ստեղծման մրցույթներ:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ նախատեսված են դասախոսական պրոպագանդան բարելավելու նաև այլ միջոցառումներ:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ

**Պ. ՖԵԴՈՍԵԵՎ**
ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ

*ՍՍՀՄ ՆՈՐ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ, որ գործողության մեջ է մտել սովետական պետության հոբելյանական՝ վաթսունհերորդ տարում, իրավամբ համարվում է զարգացած սոցիալիստական հասարակության կյանքի հիմնական օրենքը, կոմունիստական ֆորմացիայի կազմավորման արդի փուլում սովետական մարդկանց կյանքի օրենքը: ՍՍՀՄ Սահմանադրությունը, կարելի է ասել, կոմունիզմ կառուցողների քաղաքական կոդեքսն է՝ արտահայտված հիմնարար օրինադրություններում:*

*ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը և դրա ընդունումը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսունհերորդ տարեդարձի տոնակատարությունն է՛լ ավելի տեսանելի ու տպավորիչ դարձրին սովետական պետության քաղաքացիների կեցության, գիտակցության ու վարքի այն գծերն ու առանձնահատկությունները, որոնք բնորոշ են առաջինը մեր երկրում ձևավորված սոցիալիստական ապրելակերպին:*

*ՍՍՀՄ Սահմանադրությունը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթները պարունակում են անմիջականորեն սոցիալիստական ապրելակերպի պրոբլեմատիկային վերաբերող մի շարք սկզբունքային դրույթներ ու գաղափարական ղեկավար ցուցումներ, մեծ ավանդ են դրա տեսական հետազոտման գործում և սովետական հասարակական գիտությանն առաջադրում են նոր խնդիրներ:*

*Ապրելակերպը, որպես որոշակի հասարակության, դասակարգին, սոցիալական խմբին հատուկ կենսագործունեության ձևերի մի համալիր, որպես անհատների կողմից տվյալ հասարակական-տնտեսական ֆորմացիայի պայմաններում իրենց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման ու զարգացման միջոց, որպես անձի շփման ու արժութային կողմնորոշման բնույթ, ստեղծվում և ձևավորվում է ոչ թե մարդկանց սուբյեկտիվ ցանկությամբ, այլ կոնկրետ հասարակարգի հիման վրա: Ուստի օրինաչափ է, որ սոցիալիստական ապրելակերպի զարգացման և ամրապնդման պրոբլեմն իր ողջ կարևորությամբ ծառացել է զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման հետ:*

*Բուրժուական հասարակության պայմաններում պատմական զարգացման գլխավոր առանձնահատկություններից մեկը Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը համարում էին անտագոնիստական հակասականությունը տեխնիկական առաջընթացի և սոցիալական զարգացման միջև, որոնք իրականանում էին աշխատավոր մարդու զրկանքների ու չարչարանքների հաշվին: «Մեր ժամանակներում,— ասում էր Մարքսը XIX դարի կեսերին,— ամեն ինչ ասես հղի է իր հակադրու-*

թյամբ... Տեխնիկայի հաղթանակներն ասես ձեռք են բերվել բարոյական անկման գնով։ Թվում է, այն բանի համեմատ, երբ մարդկությունն իրեն է ենթարկում բնությունը, մարդն էլ դառնում է այլ մարդկանց ստրուկը կամ սեփական ստորության ստրուկը։ Նույնիսկ գիտության պարզ լույսը, ըստ երևույթին, չի կարող փայլել այլ կերպ, քան միայն տգիտության ֆոնի վրա։ Մեր բոլոր հայտնագործություններն ու մեր ողջ առաջընթացը ասես թե հանգեցնում են այն բանին, որ նյութական ուժերն օժտվում են մտավոր կյանքով, իսկ իր մտավոր կողմից զրկված մարդկային կյանքը իջեցվում է նյութական հասարակ ուժի աստիճանին» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 12, стр. 4—5)։

Ռեալ սոցիալիզմն է, որ առաջին անգամ հաղթահարում է մարդկանց համատեղ գործունեության արդյունքների այդ փոխակերպումը խորթ, նրանց վրա տիրապետող ուժի։ Սոցիալիստական հասարակությանը հատուկ է հասարակական առաջընթացի կարևորագույն նվաճումների բեկումը յուրաքանչյուր մարդու գործունեության մեջ, նրա ապրելակերպում։

Սոցիալիստական ապրելակերպի տարրերը զարգացել և ամրապնդվել են սոցիալիստական հեղափոխության հաղթանակի ժամանակվանից։ Դրանք հաստատվում էին նախկին սոցիալ-տնտեսական կացութաձևի խորտակման համեմատ, բուրժուական հասարակության ավանդույթների և ապրելակերպի դեմ մղվող պայքարում, կապիտալիստական տարրերի, դրանց գաղափարախոսության, քաղաքականության ու վարքի նորմերի դեմ հարձակման ընթացքում։

Սոցիալիստական ապրելակերպի ստեղծման մեջ, ինչպես նաև սոցիալիզմի հիմունքներով հասարակության հեղափոխական վերափոխման ողջ գործում, առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Նրա հեղափոխական և աշխատանքային ավանդույթները, գիտական, մարքս-լենինյան գաղափարախոսությունը սոցիալիստական ապրելակերպի ձևավորման, նոր մարդու դաստիարակման և կոմունիստական բարոյականության հաստատման հիմքն են։

Սոցիալիստական հասարակարգում բանվոր դասակարգի առաջատար դերը իր գործունեության մեջ մարմնավորում է նրա ավանգարդը՝ կոմունիստական կուսակցությունը։ Հենց կուսակցության միջոցով է, որ բանվոր դասակարգը վճռական ներգործություն է ունենում բոլոր աշխատավորների քաղաքական գիտակցականության և գիտական աշխարհայացքի զարգացման վրա։ Սոցիալիզմի լիակատար հաղթանակով նոր, սոցիալիստական ապրելակերպը դառնում է հասարակության սոցիալական բոլոր խմբերի, բոլոր ազգերի և ազգությունների կենսագործունեության ուղեցույց օրենք. նրա սկզբունքներն ու նորմերը ավելի ու ավելի մեծ չափով են թափանցում մարդկանց աշխատանքի ու կենցաղի բոլոր կողմերը։

Սոցիալիստական ապրելակերպում առավել անմիջականորեն է դրսևորվում սոցիալ-տնտեսական ու քաղաքական նվաճումների կապը նոր հասարակության կառուցման ընթացքում մարդկանց կեցության ու գիտակցության մեջ կատարվող մշտական բարենպաստ փոփոխությունների հետ։ Սոցիալիստական ապրելակերպը մի ապրելակերպ է, որի նպատակն է նոր մարդու, Լենինի խոսքերով ասած՝ բազմակողմանի զարգացած և բազմակողմանի պատրաստված (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 42) մարդու դաստիարակումը։

Սոցիալիզմի ապրելակերպի ձևավորումը ենթադրում է երկու անհրաժեշտ պայման։ Մի կողմից, դա արտադրության սոցիալիստական եղանակի և համապատասխան հասարակական-քաղաքական կարգի ստեղծումն է։ Մյուս կողմից՝ նոր մարդու, կոմունիստական վեհ իդեալներով օժտված, մարդկանց միջև նոր հարաբերությունների, շփման ու վարքի նորմերի իսկական կոլեկտիվիստական ձևերի ակտիվ կառուցողի դաստիարակումն է։ Այս պրոցեսները սերտորեն կապված են միմյանց հետ։ Սոցիալիստական ապրելակերպի հասունացումը նշանակում է, ամենից առաջ, մարդկային հարաբերությունների նոր ձևերի արմատավորում արտադրության մեջ, հասարակական կյանքում, ընտանիքում ու կենցաղում։ Հենց նոր հարաբերություններն են արտացոլում նյութական բարիքների արտադրության ու բաշխման նոր պայմանները և դրանց



համապատասխան հասարակական կապերը, որոնք չեն կարող չհանգեցնել բուն մարդու, նրա հայացքների ու ձգտումների փոփոխության։

Այս երկմիասնական պրոցեսն իր բազմակողմանի զարգացումն է ստանում հասուն սոցիալիզմի փուլում, երբ, ինչպես ասված է ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, «...սոցիալիզմը զարգանում է իր սեփական հիմքի վրա, ավելի ու ավելի լրիվ են բացահայտվում նոր հասարակարգի ստեղծարար ուժերը, սոցիալիստական ապրելակերպի առավելությունները, աշխատավորներն ավելի ու ավելի լայնորեն են օգտվում հեղափոխական մեծ նվաճումների բարիքներից»։

Ապրելակերպը սինթետիկ կատեգորիա է, որը որոշակի տեսանկյունով ընդգրկում է մարդկանց կենսագործության բոլոր ձևերը։ Որքանով որ սոցիալիզմի հաստատումը նշանակում է արմատական հեղաշրջում հասարակության բոլոր անդամների կյանքի տնտեսական ու սոցիալ-քաղաքական պայմաններում, այնքանով էլ էական փոփոխության են ենթարկվում մարդկանց հայացքները, համոզմունքներն ու ձգտումները և նրանց կենսագործունեության բոլոր եղանակները, որոնցից բաղկացած է ապրելակերպը։ Այդ իսկ պատճառով սոցիալիստական ապրելակերպը սկզբունքորեն տարբերվում է բուրժուական հասարակությանը բնորոշ ապրելակերպից։ Այդ մասին համոզիչ ասված է կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ. «Իսկական կոլեկտիվիզմի և ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի և ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն. այսպիսին են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսին են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղնուծուծը»։

Սոցիալիստական ապրելակերպը մարմնավորում է մարդու նոր վերաբերմունքը հասարակական գործերի, ժողովրդի ընդհանուր շահերի, հայրենիքի և ողջ մարդկության ճակատագրի նկատմամբ։ Անձնական շահերի և հասարակության շահերի լավագույն զուգորդումը ձեռք է բերվում հասարակական հիմունքների առաջատար դերի պայմաններում։ Ժողովրդական տնտեսության աճին ակտիվ աջակցելը, հանրային սեփականության պահպանման ու բազմապատկման, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ու բարգավաճման, համաշխարհային ասպարեզում նրա բարոյաքաղաքական հեղինակության բարձրացման, համընդհանուր խաղաղության ամրապնդման ու ժողովուրդների անվտանգության նկատմամբ հոգատարությունը և բազմաթիվ այլ հասարակական գործեր գտնվում են սոցիալիստական հասարակության մարդու կենսական հետաքրքրությունների և գիտակցված պարտականությունների շրջանակներում։ Սովետական մարդկանց գիտակցության մեջ ավելի ու ավելի ամուր է հաստատվում Մարքսի արտահայտած այն ճշմարտությունը, թե միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատություն (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, стр. 75)։ Զարգացած սոցիալիստական հասարակության կյանքի օրենքն է՝ բոլորի հոգատարությունը յուրաքանչյուրի բարօրության և յուրաքանչյուրի հոգատարությունը բոլորի բարօրության նկատմամբ։

Հասարակական պարտքի գիտակցումը հանգեցնում է նրան, որ մարդիկ զգում են իրենց կապը ո՛չ միայն ձեռնարկության, հիմնարկության կոլեկտիվի, այլև ողջ ժողովրդի հետ, համակվում միջազգային համերաշխությամբ։ Իսկ ժողովուրդների բարեկամությունը դա խաղաղությունն ու համագործակցությունն է նրանց միջև։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաշինք, առանց պատերազմների կյանքի իդեալ, համընդհանուր և անխորտակելի խաղաղության իդեալ— սա՛ է սոցիալիստական աշխարհայացքի և սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն բնորոշ գիծը։

Ինտերնացիոնալիզմը մեզ մոտ իրականացվում է առօրյա կյանքում, սովետական մարդկանց ստեղծագործ աշխատանքում ու կենցաղում։ Հատկանշական է, որ սովետական բոլոր հանրապետություններում, բոլոր երկրամասերում, մարզերում ու շրջաններում, քաղաքներում ու գյուղերում, բոլոր

ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում, հիմնարկություններում ու ինստիտուտներում տարբեր ազգությունների մարդիկ ապրում և համագործակցում են համերաշխ, եղբայրաբար, փոխօգնության հիման վրա նորանոր հաջողությունների հասնելով կոմունիզմի կառուցման գործում:

Ի թիվս քաղաքացիների հիմնական պարտականությունների, մեր Սահմանադրությունը նշում է. «ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու պարտքն է հարգել մյուս քաղաքացիների ազգային արժանապատվությունը, ամրապնդել սովետական բազմազգ պետության ազգերի և ազգությունների բարեկամությունը» (հոդված 64):

Սոցիալիստական ապրելակերպը աշխատավոր մարդու, նյութական ու հոգևոր արժեքներ ստեղծող մարդու ապրելակերպն է: ՍՍՀՄ Սահմանադրության մեջ ամրակայված է սոցիալիզմի օրոք աշխատանքի հիմնարար դերը և բացահայտված է մեր հասարակության՝ որպես աշխատավորների հասարակության, բնույթը: 14-րդ հոդվածում նշված է. «Հանրային հարստության, ժողովրդի և սովետական յուրաքանչյուր մարդու բարեկեցության աճի աղբյուրը սովետական մարդկանց շահագործումից զերծ աշխատանքն է»: Դրա հետ միասին այստեղ շեշտված է սոցիալիզմի յուրահատկությունը. նրա պատմական ծառայությունն աշխատանքի ազատագրումն է, հումանիզացիան, դրա կապիտալիստական օտարման հաղթահարումը, արտադրության միջոցների մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման վերացումը, առավել լայն հնարավորությունների ստեղծումը յուրաքանչյուրի ուժերն ու ընդունակություններն իրականացնելու համար: Բուն հանրային արտադրությունը սոցիալիզմի օրոք պլանաչափորեն ենթարկվում է հասարակության բոլոր անդամների հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարման նպատակին: ՍՄԿԿ-ն իր XXV համագումարում ընդունեց սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիր, որի գլխավոր կետն ազդարարում է. «էկոնոմիկայի աճի և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հիման վրա ապահովել ժողովրդի նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումը, սոցիալիստական ապրելակերպի հետևողական զարգացումը, սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի հետագա կատարելագործումը»:

Արդի պայմաններում առանձնապես կարևոր նշանակություն և ռեալ ուժ ունի Մարքսի այն ցուցումը, որ արտադրության պրոցեսում փոխվում են ոչ միայն օբյեկտիվ պայմանները, այլև բուն արտադրողները, իրենց մեջ մշակելով նոր հատկություններ, արտադրության շնորհիվ զարգացնելով և վերափոխելով հենց իրենց, ստեղծելով նոր ուժեր և նոր պատկերացումներ, շփման նոր միջոցներ և նոր պահանջմունքներ (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 46, ч. I, стр. 483—484):

Սոցիալիզմի օրոք, ինչպես նշել է Մարքսը, նյութական արտադրությունից անհետանում է թշվառության և անտագոնիստականության ձևը, սկսվում է անհատականությունների ազատ զարգացումը: Շահագործումից ազատագրվելու և աշխատանքի արտադրողականության աճի շնորհիվ մեծանում է աշխատավորների ազատ ժամանակը, որին և համապատասխանում է անհատների գիտական, գեղարվեստական, մի խոսքով՝ համակողմանի զարգացումը:

Այսօր հազիվ թե որևէ մեկը տարակուսի «ոչ միայն հացիվ» հայտնի արտահայտության ճշմարտացիությանը: Այո՛, մարդու կենսագործունեությունը, իրոք, չի հանգեցվում գոյության միջոցներ հայթայթելուն, «կարիքով ու արտաքին նպատակահարմարությամբ թելադրված աշխատանքին» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 25, ч. II, стр. 386): Ապրելակերպի համար հիմնական գործոն է նաև մարդկանց հասարակական-քաղաքական և հոգևոր գործունեությունը:

Սոցիալիստական ապրելակերպին բնորոշ է, ամբողջությամբ վերցրած՝ հասարակության, սոցիալական բոլոր խմբերի և առանձին անհատների հոգևոր ակտիվության բարձր մակարդակը: Հետզհետե ավելի ու ավելի է վերանում ֆիզիկական ու մտավոր աշխատանքի սահմանը. գերազանցապես ֆիզի-



կական աշխատանքով զբաղված մարդկանց գործունեության մեջ անշեղորեն աճում է հոգևոր կոմպոնենտը: Ստեղծագործական բովանդակությամբ աշխատանքի հագեցումն ընթանում է մասսաների բազմակողմանի հոգևոր վերելքին համաքայլ: Աշխատավորության շատ կատեգորիաների ապրելակերպում արմատական վերափոխումների հանգեցնող այդ տենդենցի օբյեկտիվ հիմքը, ամենից առաջ, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումն է սոցիալիստական կարգերի առավելությունների հետ, գիտության և արտադրության միացման արագացող պրոցեսը:

Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «զարգացած սոցիալիզմի պայմաններում և գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ աճում է արտադրության նոր տիպի աշխատող, որի գործունեության մեջ ավելի ու ավելի ներդաշնակորեն է զուգորդվում ֆիզիկական ու մտավոր աշխատանքը»: Եվ պատահական չէ, որ սոցիոլոգիական ու գեղարվեստական գրականության մեջ երևան են եկել այնպիսի բառակապակցություններ, ինչպիսիք են «բանվոր-ինտելիգենտ», «ոչ պրոֆեսիոնալ ինտելիգենցիա», «բանվոր-հետազոտող» և այլն: Այս տերմինների օգնությամբ հասարակական միտքը արտահայտում է այն տեղաշարժերը, որոնք այսօր կատարվում են աշխատանքային գործունեության ոլորտում և որոնք կոմունիզմի կառուցման ընթացքում նախապատրաստում են մտավոր ու ֆիզիկական աշխատանքի հետագա միացումը:

Հասարակության անդամների հասարակական-քաղաքական ակտիվ գործունեությունը սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն գծերից մեկն է: Դրա դրսևորումն ապահովվում է սոցիալիզմի բուն էությամբ, դրան հատուկ դեմոկրատիզմի բնույթով: Սոցիալիստական դեմոկրատիան բարձր տիպի դեմոկրատիա է ճանաչվել (ոչ թե խոսքով, այլ իրականում) հենց այն պատճառով, որ հենվում է մասսաների մեծ ակտիվության ու գիտակցականության, կյանքի և պետական կառավարման բոլոր ոլորտներում նրանց պարտադիր ու հարաճուն մասնակցության վրա: Սոցիալիստական կարգերի խոշորագույն նվաճումը աշխատավորների հասարակական ինքնագործունեության բուռ ամենայնի զարգացումն է: Սոցիալիստական դեմոկրատիայի ստեղծագործական պոտենցիալի պատմական ծանրակշիռ վկայությունը, նրա գլխավոր փաստաթուղթը ՍՍՀՄ Սահմանադրությունն է, կոլեկտիվ բանականության արդյունքը, որը քննարկման ժամանակ իր մեջ ներառեց աշխատավորների լավագույն գաղափարներն ու խոհերը: «Մենք համոզվածությամբ ու հպարտությամբ կարող ենք ասել՝ հենց սովետական ամբողջ ժողովուրդը դարձավ իր պետության հիմնական օրենքի իսկական ստեղծողը»,— 1977 թվականի հոկտեմբերի 4-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նիստում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Սովետական Սահմանադրության մեջ ամրակայված են զարգացած սոցիալիստական հասարակության իսկական դեմոկրատիան, քաղաքական սիստեմը, որն ապահովում է բոլոր հասարակական գործերի արդյունավետ կառավարումը, պետական կյանքին աշխատավորների ունեցած ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունը, քաղաքացիների իսկական իրավունքների և ազատությունների զուգորդումը հասարակության հանդեպ ունեցած նրանց պարտականությունների և պատասխանատվության հետ:

Նոր մարդու և սոցիալիստական ապրելակերպի հիանալի գիծը սոցիալական անսպառ լավատեսությունն է: Դա պայմանավորված է նախ և առաջ նրանով, որ սոցիալիստական հասարակական կացութաձևը մշակվել և հաստատվել է ամենաառաջավոր ու հեղափոխական դասակարգի՝ պրոլետարիատի կողմից: Մեր ապրելակերպը արդիականության ամենաառաջադիմական հասարակարգի՝ սոցիալիստական հասարակարգի ծնունդն է: Այստեղից էլ բխում է կոմունիզմ կառուցողների լավատեսական աշխարհազգացումը: Նրանց խորթ է պեսիմիզմը. հուսահատությունը, գրել է Լենինը, հատուկ է կործանվող դասակարգերին (տե՛ս Երկեր, հ. 16, էջ 432): Բանվոր դասակարգի հեղափոխական լավատեսությունը կոփվել է դեռ կապիտալի, կապիտալիստական ապրելակերպի դեմ մղված պայքարում: Բանվոր դասակարգի անսասան համոզվածությունն իր գործի պատմական ճշմարտացիության և անպարտելիության հարցում նոր

ուժով է դրսևորվում և հաստատվում սոցիալիստական հասարակության մեջ։

Նոր մարդու աշխարհայացքի և նրա ապրելակերպի մյուս կարևոր հատկանիշը համոզմունքների և արարքների օրգանական միասնությունն է։ Մարդու գաղափարների և զգացմունքների իրական դրսևորումը նրա պրակտիկ գործերն են, նրա հասարակական գործողությունները։ Սոցիալիստական ապրելակերպում, նոր հասարակության մարդկանց կենսագործունեության բոլոր ոլորտներում կոմունիստական գաղափարներն անխզելիորեն կապված են կոմունիստական գործերի հետ։ Գաղափարական դրույթների, մարդկանց բարոյական կերպարի և ակտիվ գործունեության այդ ներդաշնակ զուգորդումն էլ կազմում է նոր մարդու, նրա ապրելակերպի ձևավորման ու զարգացման էական մոմենտը։ Գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի, բարոյականության կոմունիստական նորմերի և մարդկանց կենսագործունեության սկզբունքների օրգանական միասնությունը լավ է արտահայտված կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսում, որը ձևակերպված է ՍՄԿԿ ծրագրում և կանոնադրության մեջ։ Բարոյական կոդեքսի հիմնական սկզբունքները սահմանում են կոմունիստական հասարակության կառուցման պայմաններում մարդուն ներկայացվող ամենօրյա բարոյական պահանջները։

Սոցիալիզմի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման համեմատ արագանում է անհատի համակողմանի զարգացումը. մարդկանց գիտակցության, վարքի, գործունեության բոլոր կողմերի համաձայնեցումը։ Սակայն միամտություն կլիներ ենթադրել, որ ռեալ իրականության մեջ այդպիսի ներդաշնակությունն ինքնաբերաբար և լիակատար ձևով է ստեղծվում անհատների, կոլեկտիվների և ամբողջ հասարակության կյանքում։ Հայտնի է, որ մարդկանց գիտակցության, վարքի և գործունեության մեջ դրսևորվում են ո՛չ միայն ներդաշնակություն, այլև անհամաչափություն, առաջանում են որոշակի հակասություններ և անհամապատասխանություն։ Երբեմն լինում է և այնպես, որ աշխատանքային ակտիվությունը չի ամրապնդվում համապատասխան բարոյական վեհ հատկություններով։ Հաճախ անհամապատասխանություն է առաջանում կոմունիստական իդեալների ընդունման և մարդկանց փաստացի վարքագծի միջև։ ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ յոթերորդ նստաշրջանում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթի մեջ պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց պորտաբուծության, աշխատանքային կարգապահության չարամիտ խախտումների, հարբեցողության և մեր սոցիալիստական ապրելակերպի բուն էությանը հակասող հակահասարակական այլ երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու անհրաժեշտության վրա։

Կյանքի դիալեկտիկան այնպիսի է, որ սոցիալիզմի օրոք նորը, առաջադիմականը հաստատվում է հնի, իր դարն ապրածի դեմ մղվող համառ պայքարում։ Եթե այս կամ այն մարդը ղեկավարվում է մասնավոր սեփականատիրական գաղափարախոսությամբ, խախտում սոցիալիզմի նորմերն ու սկզբունքները, նրա ապրելակերպը չի կարող համարվել սոցիալիստական, թեև նա ապրում է սոցիալիստական հասարակության մեջ։ Բուրժուական ապրելակերպի մնացուկներն ու ազդեցությունը ինքնին դուրս չեն մղվում նոր հասարակության աճող ուժերի կողմից։ Հին նորմերի և սովորույթների կրողները շարունակում են իրենց ներգործությունն ունենալ շրջապատի վրա։ Պատմականորեն այսպես է ստեղծվել հակասությունը սոցիալիզմի վիթխարի հաջողությունների և հասարակության զարգացումն արգելակող հետամնաց տարրերի միջև։ Առանց հաղթահարելու այդ բացասական դրսևորումները կամ, ինչպես ասել է Լ. Ի. Բրեժնևը, առանց վերացնելու այդ «սոցիալական պալարները», հնարավոր չէ կառուցել կոմունիստական հասարակարգ։

Անվիճելի է, որ սոցիալիստական ապրելակերպի հաստատման նպատակով անցյալի վերապրուկների դեմ մղվող պայքարն անմիջականորեն պայքար է կապիտալիզմի «բնածին արատների» կոնկրետ կրողների դեմ։ Սակայն դա ունի նաև սոցիալ-կուլտուրական ավելի լայն իմաստ. անցյալի վերապրուկների դեմ մեր հարձակումն ուղղված է նաև դրանց աշխարհայացքային, բարոյական ու կենցաղային հիմքերի դեմ, կապիտալիստական երկրներում գերիշխող բուրժուական ապրելակերպի կույուն ավանդույթների դեմ։ Սոցիալիզմի մրցությունը կապիտալիզմի հետ չի հանգեցվում լոկ տեխնիկատնտեսական ցուցանիշների, այն ընդգրկում է նաև հասարակական իդեալների և արժույթների ոլորտը, մարդու կենսաձևը։

Հենց այստեղ վերջին տարիներս հատուկ ուժով ծավալվել է գաղափարական պայքար, որով բուրժուական գաղափարախոսներն ու կապիտալիստական երկրների պրոպագանդիստական ծառայությունները ձգտում են ռևանշ վերցնել միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի փոխվելու, իմպերիալիզմի պատմական նախաձեռնության կորստի համար։ Այժմ, ինչպես առաջ, բուրժուական պրոպագանդայի և մարդուն «արժանի» ապրելակերպի մասին բուրժուական պատկերացումների բուն էությունը սպառողականությունն է իր միամիտ իմաստությամբ. «Ես գնում եմ (կամ ունեմ, կամ կարող եմ գնել և ունենալ)՝ նշանակում է ես գոյություն ունեմ»։

Հարկավոր է հաշվի առնել, որ կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքը բուրժուական աշխարհայացքում մնայուն ավանդույթ է։ Որպես դրա տեսական հիմնավորում հանդես եկավ ուտիլիտարիզմի, սոցիալ-դարվինիզմի, պրագմատիզմի և այլ «իզմերի» փիլիսոփայությունը. դրանք արտահայտում են քաղքենիականության գաղափարախոսությունը և քարոզում հակաբանականություն ու «հարմարվելու» նեղ գործամոլական պատվիրաններ՝ հանուն անձնական բարեկեցության և «ողջ մնալու»։ Արևմուտքում հզոր աջակցություն ստացող հասարակական մտքի շատ դպրոցներ ու դպրոցիկներ և կապիտալի դիպլոմավոր կամակատարների բանակի անհամար «ազատ հրաձիգներ» դեռ շարունակում են կրկին ու կրկին գովերգել և սրբազան օրենքի աստիճանի բարձրացնել քաղքենիական առաքինությունները, ծայրահեղ հակաբանականությունը և վայրագ ինդիվիդուալիզմը։

Մարդկային կյանքն իր սպառողական մեկնաբանություններով հանգեցվում է եկամուտների մակարդակին և անհատի տրամադրության տակ եղած նյութական բարիքների, ինչպես նաև բազմալի, հաճախ քարանձավային-պարզունակ «վայելքների» քանակին։ Կապիտալիզմը ձեռնարկատիրություն է անում նույնիսկ բուն մարդկային պահանջմունքներով, արհեստականորեն հրահրելով մարդու չնչին ցանկություններ ու հակումներ, նրան պինդ կապելով ժամանցի ու զվարճության ինդուստրիայի կառքին։ Արդի բուրժուական սոցիոլոգիայում և գրականության մեջ մոդա դարձած զգացմունքների հակադրումը բանականությանը փոխակերպվում է մարդու էմոցիոնալ կյանքի անվան տակ կենդանական-բնազդական բնության բացարձակացման ու փառաբանման։ Այս խեղաթյուրված մտայնության հետ է կապված դաժանության ու բռնության պաշտամունքը։ Սպառողական ապրելակերպը խթանում է ալկոհոլիզմի, նարկոմանիայի, սեքսուալ սանձարձակության ու հանցագործության աճին։

Սպառողականության արմատավորմամբ բուրժուազիան ձգտում է մասսաներին շեղել քաղաքական ակտիվությունից և ճնշել հոգևոր պահանջմունքները, բորբոքել շահադիտական, դիզելու կրքեր։ Բուրժուական հասարակությունը դեռ ունակ է ընդլայնել նյութական արտադրությունը, բնակչության մի մասի համար մեծացնել նյութական սպառումը, սակայն հետզհետե նա ավելի ու ավելի է ճնշում հոգևոր սպառումը, առավել ուժգնորեն է բացահայտում իր թշնամանքը բանականության, բարոյականության ու առաջադիմական կուլտուրայի հանդեպ։

Կապիտալիստական հասարակության և նրա արժույթների սիստեմի ճգնաժամը, կապիտալիստական արդյունաբերական արտադրության՝ վերահսկողությունից դուրս էքսպանսիայի քայքայիչ հետևանքները շրջապատող միջավայրի և բուն մարդու համար, աշխատավորության լայն մասսաների ու երիտասարդության աչքում իրեն ավելի ու ավելի վարկաբեկող սպառողական «կյանքի փիլիսոփայության» և բարոյականության ողորմելիությունն ու ավերիչ ներգործությունը այնքան բացահայտ են դարձել, որ վերջին տարիներս բուրժուական գաղափարախոսներն ավելի ու ավելի համառ փորձեր են անում՝ մշակելու բուրժուական սպառողական ապրելակերպի ձանձրացնող «մոդելի» ավելի գայթակղիչ փոխանյութ։ Լայնորեն ռեկլամված «սպառման հասարակության» սնանկությունը հասարակական ու անհատական կյանքի արմատական հարցերում մասամբ գիտակցվեց 70-ական թվականներին մոդա դարձած «կյանքի որակի» կոնցեպցիաներում։ Հատկապես սոցիալ-դեմոկրատիայի լիդերները ուժգնորեն պայքարում են հանուն կենսաձևի ռեֆորմի, հանուն «արևմտյան հասարակության արժույթների սիստեմի» փոփոխության։ Բայց դրա հետ միասին նրանք մերժում են հեղափոխական որևէ վերափոխում, առաջարկելով պահպանել թե՛ մասնավոր սեփականությունը, թե՛ կապիտալիստական ձեռնարկատիրությունը, թե՛ էկոնոմիկայի շուկայական մեխանիզմը։ Այդ պատճառով էլ հասարակության «հումանիզացման» և «կյանքի նոր որակի» գաղափարները, որպես կանոն, մնում են կապիտալիստական անհրապույր իրականությունը քողարկող դատարկ դեկլարացիա։

նանսական խարդախությամբ, բռնակալությամբ, ստորաքարշությամբ՝ սոցիալական սանդուղքի վերևում» (Երկեր, հ. 26, էջ 493)։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի արտադրական և բյուրոկրատական հսկա մեքենայի մշտական ու չթուլացող ճնշումը մարդու վրա լրացվում է այսպես կոչված «մասսայական կուլտուրայի» նպատակաուղղված հորինմամբ ու տարածմամբ, որը դիմազրկում է թե՛ իր ստեղծողներին, թե՛ սպառողներին, համահարթում և ստանդարտացնում է մարդկանց հոգևոր կյանքը։ Եվ հասկանալի է, որ դեմոկրատական շարժումները և առաջավոր կուլտուրայի վարպետները ամբողջ վճռականությամբ հանդես են գալիս մարդկային կյանքի այդպիսի աղքատացման և դիմազրկման դեմ։

Այս ֆոնի վրա է՛լ «ավելի լրիվ ու ավելի վառ կերպով են բացահայտվում սոցիալիզմի՝ որպես արտադրաեղանակի և ապրելակերպի, պատմական առավելությունները, նրա իսկական հումանիստական էությունը» (Լ. Ի. Բրեժնև)։

Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրները ի դեմս կոմունիստական հասարակության տեսան «միակ հասարակությունը, որտեղ անհատների ինքնատիպ և ազատ զարգացումը դադարում է ֆրազ լինելուց» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, стр. 441) և այդ հիման վրա սկզբունքային քննադատության ենթարկեցին հավասարարական «զորանոցային» կոմունիզմի կոնցեպցիաները։ Գործնականում իրականություն դարձած նման կոնցեպցիաների բացասական հետևանքներն ակնառու դրսևորվեցին հասարակության մաոիստական «մոդելում», որը ոտնահարում է անձի արժանապատվությունը և հումանիզմի սկզբունքները։ Մենք վճռականորեն մերժում ենք սոցիալիզմի պատմության անիվը շրջելու, կոմունիստական հասարակության կառուցման մայրուղուց նրան դուրս գցելու բոլոր փորձերը, հասարակություն, որի սկզբունքն է. «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների»։

Պետք է ասել, որ վերջին ժամանակներս «աճի սահմանների» մասին դիսկուսիաներում արևմտյան որոշ տեսաբաններ հանդես եկան ապագա կոմունիստական հասարակության բնույթի վերաբերյալ մարքս-լենինյան հիմնարար դրույթները վերանայելու հավակնություններով։ Անքննադատաբար փոխ առնելով «Հռոմեական ակումբի» բուրժուական գիտնականների մարգարեությունները, որոնք մարդկությանը գուշակում են մոտալուտ գլոբալ աղետ՝ արդյունաբերական արտադրության ու բնակչության էքսպոնենցիալ աճի, բնական ռեսուրսների սպառման, միջավայրի աղտոտման և այլնի կործանարար ներգործության հետևանքով, այդ հեղինակներն առաջարկում են «դուրս նետել» կամ արմատապես ռեվիզիայի ենթարկել կոմունիզմի ժամանակ ըստ պահանջմունքի բաշխման թեզը և, դրա փոխարեն, մաոիստական «գոտիների ձգման», հավասարեցման, քարտային սիստեմի և նման բաների օգնությամբ առաջադրել չափազանց աղքատ «ասկետիզմի փիլիսոփայությունը» (W. Harich. Kommunismus ohne Wachstum? Reinbek bei Hamburg, 1975:)

Հիրավի, աղքա՜տ է արդի ռեվիզիոնիստների երևակայությունը։ Դեռ 70 տարի առաջ Լենինը Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմում սպանիչ կերպով բնորոշել է նման «մեթոդը». «Կկարդան Օստվալդին, կհավատան Օստվալդին, կշարադրեն Օստվալդին, մարքսի՜զմ կանվանեն այդ։ Կկարդան Մախին, կհավատան Մախին...» (Երկեր, հ. 14, էջ 459), և այսպես անվերջ։

Իսկ ինչ վերաբերում է նորելուկ «ասկետիզմի փիլիսոփայությանը», ապա նրա կեղծ մարքսիստական հավատափոխները պետք է, որ մի լավ մտածեին թեկուզ և այն մասին, որ այդ փիլիսոփայության արդի վերսիայի հորինողները ամենից առաջ այն նախատեսել են զարգացող երկրների ժողովուրդների և բուրժուական երկրների աշխատավորների համար, մտադրություն ունենալով նրանց հաշվին հաղթահարել այսօրվա կապիտալիզմի տարերային զարգացման ծանր հետևանքները։

Կոմունիստներն իրենց իդեալը տեսնում են ո՛չ թե ասկետական ապրելակերպի, ո՛չ թե պահանջմունքների և անձնական շահերի ճնշման, այլ անհատի համակողմանի զարգացման, հասարակական ու անձնական, նյութական ու բարոյական խթանների ներդաշնակ զուգորդման մեջ։ Լենինը 1920 թվականին Կլարա Ցետկինի հետ ունեցած զրույցում ասել է. «Կոմունիզմն իր հետ պետք է բերի ոչ թե ճգնավորություն, այլ կենսուրախություն և առույգություն...» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, հ. 2, Հայպետհրատ, 1958, էջ 600)։ Առանց անձնական շահերի ճանաչման ու բավարարման անհնար կլիներ ծավալել սոցիալիստական մրցություն։ Չէ՛ որ դա ոչ թե շահույթի ետևից ընկնե-



լու մրցակցություն է, այլ աշխատանքի բնագավառի ստեղծագործական մրցույթ։ Հենց ստեղծագործական գործունեության և դրա արդյունքների մեջ է դրսևորվում անհատը, այդ չափանիշներով էլ նրան գնահատում է հասարակությունը։ Սոցիալիստական մրցության մեջ անձնական շահերը լավագույն ձևով զուգորդվում են ողջ հասարակության շահերի հետ։

Սոցիալիստական ապրելակերպն իր էությամբ ու հիմնական գծերով բուրժուական հասարակության ապրելակերպի հակապատկերն է։ Հաստատվելով սոցիալիզմի կառուցման հետ միասին, նոր ապրելակերպն իսկույն հանդես չի գալիս որպես սոցիալիստական հասարքկության բոլոր անդամների կենսագործունեության կացութաձև, քանզի կապիտալիզմի վերապրուկները, քաղքենիական հայացքներն ու նախապաշարմունքները դեռ երկար ժամանակ զգացվում են առանձին մարդկանց ամենօրյա վարքագծում, արարմունքներում ու գործողություններում։ Խնդիրն այստեղ այն է, որ սոցիալիստական հասարակության բոլոր անդամների ապրելակերպը նրանց կենսագործունեության բոլոր ձևերում դառնա սոցիալիստական։ Այս խնդրի լուծումը ենթադրում է մարդկանց կյանքի օբյեկտիվ պայմանների հետագա կատարելագործում և նրանց գիտակցականության բարձրացում։ Իր հերթին, սոցիալիստական ապրելակերպի հաստատումն ու կատարելագործումը նշանակում է պայմաններ ու նախադրյալներ ստեղծել կոմունիստական հասարակության մարդու և նրա ապրելակերպի ձևավորման համար։

Այստեղ որպես հիմնական օղակ հանդես է գալիս կոլեկտիվը։ Աշխատավորական կոլեկտիվների աճող նշանակությունն իր օրենսդրական արտահայտությունն է ստացել ՍՍՀՄ Սահմանադրության մեջ, ուր նշված է, թե նրանք մասնակցում են պետական ու հասարակական գործերի, արտադրության ու սոցիալական զարգացման, ձեռնարկությունների և հիմնարկությունների կյանքի բոլոր հարցերի քննարկմանն ու լուծմանը։ «Աշխատավորական կոլեկտիվները,— ասված է 8-րդ հոդվածում,— զարգացնում են սոցիալիստական մրցությունը, նպաստում աշխատանքի առաջավոր մեթոդների տարածմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, իրենց անդամներին դաստիարակում են կոմունիստական բարոյականության ոգով, հոգ տանում նրանց քաղաքական գիտակցականության, կուլտուրայի և պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման մասին»։ Աշխատավորական կոլեկտիվի դերը, այսպիսով, չի հանգեցվում միայն արտադրության ոլորտին, շատ բանով նրանից են կախված մարդկանց կենցաղի ու հանգստի ձևերը, նրա ֆունկցիաներում կարևոր տեղ է գրավում հոգատարությունը մարդկանց հոգևոր զարգացման նկատմամբ։ Աշխատավորական կոլեկտիվն այսօր դարձել է քաղաքացիների սոցիալական ու բարոյական պատրաստության դպրոց, նրանց մեջ հասարակական պարտքի, միմյանց նկատմամբ պահանջկոտության, փոխադարձ հարգանքի ու փոխօգնության զգացում ձևավորելու դպրոց։ Կոլեկտիվում է ստեղծվում հասարակական կյանքի իսկական առողջ մթնոլորտ, զարգացած սոցիալիզմին բնորոշ՝ որոնման, ստեղծագործման, բարձր պատասխանատվության մթնոլորտ։ Աշխատանքային կոլեկտիվը մեծ հնարավորություններ և բազմազան միջոցներ ունի իրավախախտումների պրոֆիլակտիկայի և սոցիալիստական իրավակարգի ամրապնդման համար։

Սոցիալիստական ապրելակերպի ամրապնդման գործում հսկայական դեր ունեն սկզբնական կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները, որոնք աշխատանքային կոլեկտիվում ձևավորում են բարոյաքաղաքական մթնոլորտ։ Նրանց ներգործությամբ է ստեղծվում առանձին մարդկանց հարգանքի և համագործակցության սկզբունքների վրա հիմնված հաղորդակցման կուլտուրան։ Նրանք կոչված են կոլեկտիվի բոլոր անդամներին դաստիարակելու լավագույն օրինակներով, նրանց մեջ մշակելու բարեխիղճ վերաբերմունք իրենց պարտականությունների կատարման նկատմամբ։

Զարգացած սոցիալիստական հասարակարգում տեղի է ունենում բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի, քաղաքի ու գյուղի աշխատավորների, ֆիզիկական և մտավոր աշխատանքի մարդկանց, բոլոր ազգերի և ազգությունների ապրելակերպի առաջադիմող մերձեցում, մի խոսքով՝ սո-





ապրելակերպը որոշող պայմաններից են բխում թե՛ աշխատանքի ուղղությունները, թե՛ ապրելակերպի հաստատման խնդիրները։

Քանի որ հասարակության ապրելակերպը ուղղակիորեն պայմանավորված է արտադրաուժերի զարգացման մակարդակով և արտադրահարաբերությունների բնույթով, սոցիալիստական ապրելակերպի հաստատման ու կատարելագործման գլխավոր ուղղությունը կապված է սոցիալիստական արտադրության հետագա զարգացման հետ։ Դրանում է մյուս բոլոր պրոբլեմների լուծման միջուկը։

Նշելով սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման հոյակապ պլանները և դրանց կատարման համար կազմակերպելով աշխատավորներին, ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ մեր հասարակության նյութական հիմքի ամրապնդումը կապահովի ապրելակերպի զարգացման գործում որոշակի դեր խաղացող պայմանների կատարելագործումը։ Հեռանկարային նախագծումներից երևում է, որ մեր երկիրը 1976—1990 թվականներին մոտ երկու անգամ ավելի շատ նյութական ու ֆինանսական ռեսուրսներ կունենա, քան անցած տասնհինգ տարում։ Սա չափազանց կարևոր հանգամանք է, քանի որ սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի, նրա նյութական ու ֆինանսական ռեսուրսների ամրապնդումը բարենպաստ պայմաններ է ստեղծում միագումար կոնկրետ միջոցառումների կատարման համար, միջոցառումներ, որոնք ուղղված են սոցիալիստական ապրելակերպի առաջընթաց զարգացման, մարդկանց կենսագործունեության առաջատար ձևերի (սկսած աշխատանքից և վերջացրած ընտանեկան-կենցաղային ոլորտով ու հանգստով) համապատասխան վերակառուցման նպատակին։

Առանձնացնելով սոցիալիստական ապրելակերպի հաստատման ու կատարելագործման այս գլխավոր ուղղությունը, պետք է տեսնել նաև դրա հետ կապված մեր գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրը։ Աշխատանքի ու կենցաղի նոր, լավագույն պայմանները իրենք իրենց չեն ստեղծվում։ Դրանք ստեղծվում, փոփոխվում ու վերակառուցվում են հենց մարդկանց կողմից, արտադրության պրոցեսում նրանց լարված ջանքերի շնորհիվ։ Այդ իսկ պատճառով, բացահայտելով սոցիալական կեցության նյութական պայմանների բարելավման և դրանց հիման վրա սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման հեռանկարները, անհրաժեշտ է մշտապես պարզաբանել այն ճշմարտությունը, որ առաջին հերթին հենց աշխատավորների, նրանց արտադրական ու հասարակական-քաղաքական ակտիվ գործունեությամբ են պայմանավորված բարեկեցության աճը և կենսական բոլոր բարիքների բազմապատկումը։

Սոցիալիզմի հիմնական սկզբունքը՝ «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի», որոշում է ո՛չ միայն բարիքների բաշխման ձևն ու չափը, ինչպես հաճախ պատկերացնում են։ Իրականում դա նախ և առաջ արտադրության ու հասարակական կյանքի կազմակերպման սկզբունքն է, դրանում արտահայտված է այն պահանջը, որ յուրաքանչյուր մարդ հօգուտ հասարակության բարեխղճորեն աշխատի իր ողջ ընդունակությունների ներածին չափով և հասարակությունից ստանա ըստ իր աշխատանքի արդյունքի։ Սովետական պետությունն իր առջև նպատակ է դնում ընդլայնել ռեալ հնարավորությունները, որպեսզի քաղաքացիներն իրենց ստեղծագործական ուժերն օգտագործեն անհատի համակողմանի զարգացման համար։

Նոր մարդու դաստիարակության և նրա ապրելակերպի ձևավորման կենտրոնական օղակը աշխատանքային գործունեությունն է։ ՍՄԿԿ XXV համագումարն այս հարցի առթիվ ևս առաջադրեց մի շարք կարևոր գործնական խնդիրներ, որոնց լուծման ընթացքում հարկավոր է կատարելագործել աշխատանքի սոցիալ-տնտեսական և արտադրական պայմանները, փոխել նրա բնույթը։ Կյանքը պահանջում է արագորեն լուծել բոլոր այն հարցերը, որոնք կապված են աշխատանքի նյութական ու բարոյական լավագույն խթանման հետ, այն հաշվով, որ բարձրացվի յուրաքանչյուր աշխատանքի արդյունավետությունն ու արտադրողականությունը։ Պակաս նշանակություն չունի ամենից առաջ ժողո-



վրդական տնտեսության բոլոր ճյուղերում կոմպլեքսային մեքենայացման և արտադրական պրոցեսների ավտոմատացման, առանձնապես օժանդակ ու երկրորդական աշխատանքների մեքենայացման տեմպերն արագացնելու մի շարք խնդիրների լուծումը։ Սա հանգեցնում է այն բանին, որ աշխատանքն ստանա առավել ստեղծագործական բնույթ և դառնա հրապուրիչ։ Եթե խոսենք ապրելակերպի կատարելագործման մասին, ապա այդ խնդրի լուծումը կնշանակի էական տեղաշարժ՝ աշխատանքն առաջին կենսական պահանջմունքի վերածելու գործում։

Ընտանեկան-կենցաղային ոլորտը էական տեղ է գրավում բոլոր մարդկանց ապրելակերպում։ Հետզհետե ավելի մեծ նշանակություն է ստանում բնակչության կենցաղսպասարկումը, որի որակից էլ շատ բանով կախված է մարդկանց ամենօրյա հոգեկան տրամադրությունը։ Վերջին տարիներս զգալիորեն աճել է բնակարանային և կոմունալ-կենցաղային շինարարությունը։ Բայց ծառայությունների ոլորտը, մի կողմից, դեռ բավականաչափ զարգացած չէ, մյուս կողմից էլ այստեղ հաճախակի են անառողջ երևույթները՝ կաշառակերությունը, հափշտակումը և այլն։ Այս ոլորտում ետ մնալն ու անկարգությունները դառնություն և հուզմունք են պատճառում, ծնում են դժգոհության զգացում։ Բնակչության կենցաղսպասարկումը բարելավելու մշտական հոգատարությունը սոցիալիստական ապրելակերպի ամրապնդման պարտադիր պայման է։ Այստեղ կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքի բնագավառում խնդիր է դրված ո՛չ միայն արագորեն կատարել ծառայությունների ոլորտի զարգացման պլանները, այլև ամրապնդել դրանում առողջ փոխհարաբերությունների սոցիալիստական նորմերը։ Առաջին պլանի վրա պետք է դրվեն սպասարկման որակն ու կուլտուրան, սպառողների նկատմամբ հարգալից վերաբերմունքը։

Սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման, համագործակցության ու փոխօգնության հարաբերությունների ամրապնդման գործնական միջոցառումների շարքում կարևոր տեղ է գրավում ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու հիմնարկություններում աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանների ներդրումն ու հետևողական իրագործումը։

Սոցիալիստական ապրելակերպի հաստատումն անբաժանելի է առօրյա կենցաղում ՍՍՀՄ Սահմանադրության դրույթների ներդրումից։ Մեր ապրելակերպի սոցիալիստական հիմունքների հետագա զարգացման խնդիրները պահանջում են լայնորեն պրոպագանդել և հետևողականորեն իրականացնել Սահմանադրության մեջ ամրակայված սոցիալ-քաղաքական նորմերն ու սոցիալիզմի բարոյական սկզբունքները, դրա արժութային դրույթները, որոնք բարձրացնում և ազնվացնում են մարդու կենսագործունեության ու վարքագծի բոլոր ձևերը։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում 1977 թվականի նոյեմբերի 2-ին ասաց. «Մենք դեռ երբեք չենք ունեցել այդպիսի բարենպաստ հնարավորություններ այն խնդիրների լուծման համար, հանուն որոնց և, վերջին հաշվով, կատարվեց հեղափոխությունը— հանուն մասսաների բարեկեցության բարձրացման, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման, անհատի համակողմանի զարգացման»։ Զարգացած սոցիալիզմի նյութական ու սոցիալ-քաղաքական հիմքի վրա, կուսակցության առաջադրած դարակազմիկ խնդիրների լուծման ընթացքում աճում ու զարգանում է սոցիալիստական ապրելակերպը, ինքնատիպ այն չափանիշը, որով էլ սահմանվում են և՛ դեպի կոմունիզմ մեր վերընթաց շարժման աստիճանները, և՛ յուրաքանչյուր մարդու վարքի նորմերը։ Սոցիալիստական ապրելակերպում մարմնավորվում է կոմունիզմի մտավոր ու բարոյական հարստագույն պոտենցիալը, որը սովետական հասարակությունը կուտակել է մեծ Հոկտեմբերի սկսած նոր դարաշրջանի վաթսուն տարում։ Սոցիալիստական ապրելակերպի հաստատումը գործնականորեն նախապատրաստում է այն կենսաձևը, որ պետք է ստեղծվի կոմունիզմին անցնելու շրջանում։

«Коммунист», № 2, 1978.

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԱՆՃԱՐԵՂ ԵՐԿԸ

(Վ. Ի. Լենինի ՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ աշխատության հրապարակման 60-ամյակի առթիվ)

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**

ՄԱՐՔՍԻ ԵՎ ԷՆԳԵԼՍԻ մշակած սոցիալիստական հեղափոխության տեսության կարևորագույն բաղադրիչներից մեկը պրոլետարիատի դիկտատուրայի ուսմունքն է։ Պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարի հայտնագործումը, նրա հիմնավորումն ու հետագա խորացումը ողջ աշխարհում հեղափոխական բանվոր դասակարգին զինեցին հասարակության սոցիալական վերափոխման պայքարի հզոր զենքով, նրա համար պարզորոշ դարձրին կոմունիստական հարաբերությունների իրականացման ուղիներն ու միջոցները, արտադրության միջոցների մասնավոր սեփականության, սոցիալական անհավասարության և մարդու կողմից մարդու շահագործման, դասակարգերի վերացման ռեալ մեխանիզմը։ Սակայն անցյալ դարի վերջին տասնամյակների՝ համեմատաբար խաղաղ զարգացման ընթացքում առկա օպորտունիզմի տարրերը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, ամբողջ աշխարհի պաշտոնական սոցիալիստական կուսակցությունների մեջ ստեղծեցին սոցիալ-շովինիզմի տիրող հոսանք, որը խոսքով սոցիալիզմ էր, գործով՝ շովինիզմ, այսինքն՝ սոցիալիստական շարժման համակերպում բուրժուազիայի շահերին, «իրենց» երկրի բուրժուազիայի «ազգային» պետության շահերին, որն առանձնապես բացահայտ և ծավալուն դրսևորվեց առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ։

Վ. Ի. Լենինը, համակողմանիորեն վերլուծելով առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով ստեղծված միջազգային իրադրությունը, եզրակացրեց, որ այն կապիտալիզմի ողջ սիստեմի ընդհանուր ճգնաժամի դրսևորումն է, մասնավոր սեփականատիրական կարգերը վերջնականապես կործանելու սոցիալիստական պրոլետարական հեղափոխությունների շղթայի սկիզբը, որի բնորոշ օղակներն էին 1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը Ռուսաստանում և լայն զանգվածների աճող դժգոհությունն ու վրդովմունքը պատերազմի ոլորտը ներքաշված երկրներում։ Այդ պայմաններում պետության նկատմամբ պրոլետարիատի սոցիալիստական հեղափոխության վերաբերմունքի հարցը ո՛չ միայն տեսական, այլև պրակտիկ-քաղաքական ամենահրատապ նշանակություն էր ստանում։ Իսկ դրա համար անհետաձգելի են դառնում պետության հարցում օպորտունիստական տեսակետների մինչև վերջ մերկացումն ու ջախջախումը։

Այդ կարևորագույն գործն իրականացրեց Վ. Ի. Լենինը։ Խորապես ուսումնասիրելով Մարքսի և Էնգելսի ողջ ժառանգությունը պետության վերաբերյալ, հիմնովին վերլուծելով այդ հարցում օպորտունիստների, անարխիստների և դրանց այս կամ այն չափով տուրք տվող սոցիալիստների դրույթները, 1917 թ. օգոստոս—սեպտեմբեր ամիսներին, ընդհատակի դժվարին պայմաններում, նա գրեց իր Պետություն և հեղափոխություն հանճարեղ երկը։ Լենինն այդ աշխատությամբ հետապնդում էր ո՛չ միայն տեսական, այլև քաղաքական ամենագործնական նպատակ՝ Ռուսաստանում օր-օրի հասունացող սոցիալիստական հեղաշրջման նախօրյակին ավելի հստակ ու որոշակի իմաստավորել այդ հեղափոխության և դրա հետևանքով առաջացող հասարակական բոլոր հարաբերությունների վերափոխման էական կողմերը։ Նա խորապես իմաստավորեց և ընդհանրացրեց միջազգային բանվոր դասակարգի ազատագրական պայքարի վերջին կես դարի փորձը, մասնավորապես Ռուսաստանի 1905—1907 թթ. և 1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների փորձը, որը նոր և անհերքելի ապացույցներ էր տալիս պետության հարցում մարքսիզմի դասականների կանխատեսումների ճշմարտության, ինչպես նաև այդ հարցի օպորտունիստական աղավաղման սնանկության վերաբերյալ։ Թեև գիրքը չավարտվեց և հրապարակվեց միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո՝ 1918 թ. սկզբներին, բայց այն լուծեց ո՛չ միայն իր ծրագրային խնդիրը՝ օպորտունիզմի տեսական հիմնավոր ջախջախումը, պետության հարցում մարքսիզմի հիմնական դրույթների ստեղծագործական զարգացումը և սոցիալիստական հեղափոխության ամբողջ պրոցեսում, կոմունիզմի կառուցման շրջանում պրոլետարական պետության դերի, զարգացման հիմնական ուղենիշների և ապագայի կանխատեսումը, այլև ծառայեց իր առաջնահերթ գործնական նպատակին՝ հիմք դառնալով սոցիալիստական հեղաշրջման անմիջական պրոցեսում կուսակցության կոնկրետ դերի մշակման և հեղափոխության գործնական-կազմակերպական խնդիրների լուծման համար։

Պետություն և հեղափոխությունը գրված է տրամաբանական արտակարգ կուռ հետևողականությամբ, պետության պատմական էվոլյուցիայի և պատմական հեռանկարի բացահայտումով, ընդ որում, ամբողջ քննարկման կիզակետը սոցիալիստական հեղափոխության ու պետության, սոցիալիստական զարգացող հասարակության ու պետության փոխհարաբերության հարցն է։ Հետազոտությունն ընթանում է հետևյալ պլանով. պետության սոցիալական էության և նրա հեռանկարների բացահայտումը, 1848—1851 թթ. հեղափոխության և 1871 թ. Փարիզի Կոմունայի փորձի մարքսյան վերլուծությունը, Էնգելսի պայքարը օպորտունիստների և անարխիստների դեմ պետության հարցում, պետության մահացման տնտեսական հիմքերի բացահայտումը, մարքսիզմի օպորտունիստական գռեհկացման փորձերի ջախջախումը։

Փորձենք այդ պլանի ընթացքով պարզաբանել աշխատության հիմնական դրույթները և նշել այն նորը, որ Լենինը ներմուծեց մարքսիզմի գանձարանը պետության հարցում։

Պետության սոցիալական էության բացահայտումը։ Լենինը նշում է, որ օպորտունիստները մարքսիզմի աղավաղումն սկսում են պետության էության աղավաղումից. բուրժուական և հատկապես մանրբուրժուական գաղափարախոսները Մարքսին այնպես են «սրբագրում», որ պետությունը դասակարգերի հաշտեցման օրգան է դուրս գալիս. մանրբուրժուական քաղաքագետների կարծիքով, պետական կարգը ոչ թե մի դասակարգի ճնշումն է մյուսի կողմից, այլ հենց դասակարգերի հաշտեցումը. 1917 թ. փետրվարյան հեղափոխության ժամանակ բոլոր էսեռները և մենշևիկները միանգամից ու ամբողջովին գլորվեցին դեպի դասակարգերին «պետության միջոցով» հաշտեցնելու մանրբուրժուական տեսությունը։ Այս բոլորը միայն մեկ նպատակ էր հետապնդում՝ ապացուցել, որ բուրժուական պետության տապալման, բուրժուական պետական ապարատի ոչնչացման, հետևաբար և բռնի հեղափոխության ու պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու անհրաժեշտություն չկա։

Սա, ինչպես նշում է Լենինը, պետության մարքսիստական տեսության օպորտունիստական աղավաղման սովորական և բավականին պարզունակ ձևն է։ Մարքսիզմի կեղծման մյուս՝ շատ ավելի նուրբ ձևը «կաուցկիական» աղավաղումն է, որում «տեսականորեն» չի ժխտվում ո՛չ միայն այն, որ պետությունը դասակարգային տիրապետության օրգան է, ոչ էլ այն, որ դասակարգային հակասությունները անհաշտելի են, բայց «...աչքաթող է արվում կամ քողարկվում է հետևյալը. եթե պետությունը դասակարգային հակասությունների անհաշտելիության արդյունք է, եթե այն մի ուժ է, որ հասարակությունից վեր է կանգնած և «ավելի ու ավելի խորթանում է հասարակությունից», ապա պարզ է, որ ճնշված դասակարգի ազատագրումն անկարելի է ո՛չ միայն

առանց բռնի հեղափոխության, այլև առանց պետական իշխանության այն ապարատի ոչնչացման, որ ստեղծել է տիրող դասակարգը...» (Երկեր, հ. 25, էջ 498)։

Պետության վերաբերյալ ընդարձակ քաղվածքներ բերելով մարքսիզմի հեղինակավոր և հանգամանալից երկից՝ Ֆ. Էնգելսի Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը գրքից, Վ. Ի. Լենինը շեշտում է մարքսիզմի հիմնական գաղափարը պետության պատմական դերի ու նշանակության մասին. «Պետությունը դասակարգային հակասությունների անհաշտելիության արդյունքն ու արտահայտությունն է։ Պետությունն առաջ է գալիս այնտեղ, այն ժամանակ և այն չափով, որտեղ, երբ ու որչափով դասակարգային հակասությունները օբյեկտիվորեն չեն կարող հաշտեցվել։ Եվ, ընդհակառակը, պետության գոյությունն ապացուցում է, որ դասակարգային հակասություններն անհաշտելի են» (նույն տեղը, էջ 496—497)։

Վ. Ի. Լենինը նշում է, որ օպորտունիստները ձգտում են աղավաղել հենց այս ակնհայտ ճշմարտությունները, և դա ավելի բացահայտ դարձնելու նպատակով նա մի շարք այլ քաղվածքներ է բերում Էնգելսից, որոնցում վերջինս խոսում է բնակչության զինաթափման ու զինված մարդկանց հատուկ ջոկատների (բանակ, ոստիկանություն) և հատուկ պետական ապարատի, օրենքների վրա հիմնված հրապարակային իշխանության՝ որպես պետության, բնորոշ կողմերի մասին, այն մասին, որ, ծագելով դասակարգերի հակադրությունները սանձահարելու պահանջից, պետությունը, որպես ընդհանուր կանոն, ամենից ավելի հզոր, տնտեսապես տիրապետող դասակարգի պետություն է, որի օգնությամբ նա քաղաքականապես էլ տիրող դասակարգ է դառնում։ Դրանց կողքին, Լենինը շեշտում է Էնգելսի այն միտքը, թե իբրև բացառություն լինում են ժամանակաշրջաններ, երբ կռվող դասակարգերն ուժերի այնպիսի հավասարակշռության են հասնում, որ պետական իշխանությունը ժամանակավորապես որոշ ինքնուրույնություն է ձեռք բերում երկու դասակարգերի նկատմամբ էլ, իբրև կարծեցյալ միջնորդ նրանց միջև, և նշում է, թե նման բացառությունը դրսևորվում է նաև հեղափոխության նախօրյակին։ Որպես բնորոշ օրինակ նա նշում է հենց Հոկտեմբերյան հեղաշրջման նախօրյակը, երբ Կերենսկու կառավարությունը հանրապետական Ռուսաստանում արդեն հալածում էր հեղափոխական պրոլետարիատին, երբ «...սովետները, մանրբուրժուական դեմոկրատների ղեկավարության շնորհիվ, արդեն անզոր են, իսկ բուրժուազիան դեռ բավականաչափ ուժեղ չէ, որպեսզի ուղղակի ցրի Սովետները» (նույն տեղը, էջ 504)։

Բայց, նշում էր Լենինը, այդ բացառությունն ամենևին էլ հիմք չի տալիս պնդելու, թե իբր մարքսիզմի հիմնադիրները ժամանակակից պետությունը դիտել են որպես «ամբողջ ժողովրդի ներկայացուցիչ», ինչպես այդ փորձում էին անել օպորտունիստները՝ վկայակոչելով կապիտալիզմի ժամանակ պետության ներկայացուցչական բնույթը և ընդհանուր ընտրական իրավունքի առկայությունը։ Լենինը բերում է Էնգելսի հայտնի միտքն այն մասին, որ ժամանակակից ներկայացուցչական պետությունը կապիտալի կողմից վարձու աշխատանքը շահագործելու գործիք է, որ ընդհանուր ընտրական իրավունքը բուրժուազիայի տիրապետության գործիքն է և, հետևաբար, խոսք չի կարող լինել այն մասին, թե իբր զարգացած կապիտալիզմի օրոք պետությունը կարող է արտահայտել աշխատավորների մեծամասնության կամքը և ապահովել այդ կամքի կենսագործումը։

Լենինյան այս վերլուծությունը և բուրժուական պետության վերաբերյալ օպորտունիզմի ստեղծած պատրանքների մերկացումը խիստ արդիական են նաև այսօր, երբ ավանդական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները և ժամանակի իրադրությունից ծնված այլևայլ ռևիզիոնիստական խմբավորումներ կրկին փորձում են Մարքսին «սրբագրել» կապիտալիզմի հետ իրենց հաշտվելու, համակերպվելու միտումի համաձայն և բուրժուական տեսաբանների հետ միաձայն արդի բուրժուական ներկայացուցչական պետությունը հռչակում են «ժողովրդական կապիտալիզմի», «համընդհանուր բարօրության հասարակության» օրգան, այն դիտում որպես սոցիալիզմին հասնելու գործիք, ժխտելով,



այսպիսով, պրոլետարական սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը։

Վ. Ի. Լենինը պարզորոշ ցույց տվեց, որ օպորտունիզմի այդ միտումը պետության հեռանկարի, սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի կառուցման շրջանում պետության դերի ու ապագայի հարցի մարքսիստական ըմբռնման արմատական աղավաղմանն ու բացահայտ կեղծմանն է հանգեցնում։ Այստեղ կեղծումը կատարվում է ո՛չ այնքան և ո՛չ հիմնականում պետության առաջացման սոցիալ-դասակարգային հիմքի, այլ բուրժուական պետության սոցիալական բնույթի հարցում և, հետևաբար, անմիջականորեն առնչվում է սոցիալիզմի և պետության հարաբերությանը։

Ի՞նչ է կատարվելու պետության հետ սոցիալիստական հեղափոխության ժամանակ. այն արդյոք վերացվելո՞ւ, ոչնչացվելո՞ւ է միանգամից և վերջնականապես, պահպանվելո՞ւ է կապիտալիզմի օրոք կազմակերպված իր ապարատով և ֆունկցիաների բովանդակությամբ, թե՞ ջարդվելու և փոխարինվելու է այլ բնույթի պետական ապարատով և իրականացնելու է արմատապես նոր սոցիալ-քաղաքական ֆունկցիաներ։ Վերջապես, այդ վերջին տիպի պետությունը պահպանվելո՞ւ է արդյոք կոմունիզմի օրոք, թե իր տեղը զիջելու է մի այլ, ոչ քաղաքական կազմակերպության։ Սրանք սոցիալիստական հեղափոխության և կոմունիստական հասարակության կառուցման էական հարցեր էին, որոնց տեսական հստակ պատասխանները պրակտիկ-քաղաքական հրատապ նշանակություն ունեին սոցիալիստական հեղափոխության նախօրյակին։

Անդրադառնալով պետության մարքսիստական ըմբռնման բուրժուական խեղաթյուրումներին, Լենինը նշում է, որ օպորտունիստները պետության «մահացման» մարքսիստական դրույթը փորձում են դիտել որպես շահագործողական, բուրժուական պետության մահացում, հետևաբար և որպես հեղափոխության, հեղափոխական բռնության ժխտում կապիտալիզմից սոցիալիզմին անցման մեջ, «թռիչքների ու փոթորիկների բացակայություն», այսինքն՝ հենց հեղափոխության բացակայություն։ Տեղին է նշել, որ իրենց նախահայրերից հեռու չեն գնացել ժամանակակից օպորտունիստներն ու ռևիզիոնիստները, որոնք այսօր էլ համառությամբ որոճում են այսպես կոչված «խաղաղ», այսինքն՝ առանց բուրժուական պետությունը ոչնչացնող և պրոլետարիատի հեղափոխական դիկտատուրա հաստատող «հեղափոխության» դրույթը։

Վ. Ի. Լենինը կոնկրետ ու դիպուկ մերկացնում է օպորտունիստների աղավաղումները և հստակ բացահայտում հարցի մարքսիստական դրվածքի բուն էությունը, բուն հեղափոխական ոգին, այն զարգացնելով ժամանակի հեղափոխական շարժման փորձի նվաճումների իմաստավորմամբ, դրանք ամփոփելով հինգ կետերում։

Առաջին։ Բուրժուական պետությունը, ըստ Մարքսի և Էնգելսի, ոչ թե «մահանում է», այլ հեղափոխության մեջ «ոչնչացվում է» պրոլետարիատի ձեռքով։ Այդ հեղափոխությունից հետո մահանում է պրոլետարական պետությունը, կամ կիսապետությունը։

Երկրորդ։ Երբ հասարակության մեծամասնությանը մի բուռ հարուստների կողմից «ճնշելու հատուկ ուժը» փոխարինվի պրոլետարիատի կողմից բուրժուազիային «ճնշելու հատուկ ուժով», դա կլինի հենց «պետության ոչնչացում իբրև պետություն», իսկ այդ ամենևին էլ չի կարող «մահացման» ձևով կատարվել։

Երրորդ։ Պետությունը «մահանալ» կամ «նիրհել», ըստ Էնգելսի, կարող է միայն այն ժամանակ, երբ ամբողջ հասարակության անունից արտադրության միջոցները կառնվեն պետության տիրապետության տակ, այսինքն՝ սոցիալիստական հեղափոխությունից հետո։ Լենինը շեշտում է, որ պետության «քաղաքական ձևն այդ շրջանում ամենակատարյալ դեմոկրատիան է», ուրեմն խոսքը վերաբերում է դեմոկրատիայի մահացմանը։

Չորրորդ։ Մարքսիզմի այն դրույթը, թե բուրժուադեմոկրատական հանրապետությունը պրոլետարիատի զարգացման համար ամենալավագույն ձևն է կապիտալիզմի ժամանակ, օպորտունիստները նենգափոխել են, այն համարելով պետության ամենալավագույն ձև պրոլետարիատի համար ընդհան-

Պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևերի բազմազանության հնարավորությունը Լենինը կանխատեսել էր դեռևս 1916 թ., նշելով, որ բոլոր երկրները կգան դեպի սոցիալիզմ, դա անխուսափելի է, բայց կգան ոչ բոլորովին միատեսակ, նրանցից յուրաքանչյուրը յուրակերպություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևում, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի տարբեր կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպում: Պետություն և հեղափոխություն գրքում, ինչպես ակնհայտ է վերոհիշյալ մեջբերումից, Լենինը կրկին անդրադառնալով պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևերի բազմազանությանը, շեշտը դնում է դրանց բոլորի էության, բովանդակության նույնության, միասնության վրա: Ինչպես մեր դարում ակնհայտ դարձավ տասից ավելի երկրներում սոցիալիստական կարգերի փորձից, այդ բոլոր երկրներում բուրժուական պետական ապարատի ոչնչացումից հետո ստեղծված սոցիալիստական պետականությունը (չնայած քաղաքական ձևերի տարբերությանը— սովետներ, ժողովրդական դեմոկրատիա), ինչպես և կառավարման ձևերի բազմազանությունը ամենուր անխուսափելիորեն հանդես եկան որպես պրոլետարիատի դիկտատուրա:

**Անարխիստական ըմբռնման քննադատությունը:** Բազմիցս անդրադառնալով պետության հարցում անարխիստների տեսակետին և դրա մարքս-լենինյան քննադատությանը, Լենինը ցույց է տալիս օպորտունիստների այն պնդման անհեթեթությունը, թե իբր անարխիստները ցանկանում են վերացնել պետությունը, իսկ մարքսիստները՝ ոչ: Նա նշում էր, որ մարքսիստների ու անարխիստների միջև ամենևին տարաձայնություն չկա պետության վերացման հարցում, որչափ խնդիրը վերաբերում է այդ վերացմանն իբրև նպատակի, բայց էական տարբերություն կա այն հարցում, թե ո՞ր՝ բուրժուական, թե՞ պրոլետարական պետությունը պետք է վերանա: Անարխիստները գտնում են, որ պետք է վերացնել բուրժուական պետությունը հենց «այսօր-վաղը», այսինքն՝ դրանով սկսել ու դրանով էլ վերջացնել հեղափոխությունը, իսկ մարքսիստները գտնում են, որ բուրժուական պետությունը պետք է ջարդել, փշրել և նրա տեղը դնել պրոլետարական, հասարակության վիթխարի մասի կամքն արտահայտող պետություն, որը զենք կծառայի մասնավոր սեփականությունը, շահագործումն ու դասակարգերը լրիվին վերացնելու, մարդկային ամբողջ մասսայի հոգեբանությունն ու գիտակցությունը, մարդկային բոլոր հարաբերությունները վերափոխելու, դեմոկրատիան ամենալայն կերպով ծավալելու համար, և դրանով իսկ ինքը կվերանա, «կմահանա»: Սա արդեն արմատական տարբերություն է և այստեղից ակնհայտ է, որ անարխիստների տեսակետը ոչ թե ըստ ձևի, այլ ըստ բովանդակության նույնանում է օպորտունիստների՝ պրոլետարիատի դիկտատուրայի ժխտման տեսակետի հետ:

**Պետության մահացման տնտեսական հիմքերի բացահայտումը:** Օպորտունիստները ձգտում էին և այսօր էլ ամեն կերպ ձգտում են տարաձայնություններ գտնել Մարքսի և Էնգելսի միջև պետության մահացման հարցում: Ամբողջական շարադրանքից պոկելով, անջատելով նրանց այս կամ այն ասույթը, դրանք հակադրում են իրար և անմիջապես աղաղակում հակասության մասին: Լենինը խորությամբ վերլուծում է նրանց այդ հայտարարությունները և անհերքելիորեն ապացուցում, որ Մարքսի և Էնգելսի միջև պետության մահացման հարցում ոչ մի հակասություն չկա, որ օպորտունիստները ուղղակի կեղծիք են կատարում, իրար հակադրելով Էնգելսի ասույթները սոցիալիզմի հաղթանակից հետո պետության էության արմատական փոփոխության վերաբերյալ (Էնգելսն ասում է, որ կոմունան արդեն բառի բուն իմաստով պետություն չէր) և Մարքսի ասույթները՝ այն ժամանակ դեռևս ապագա սոցիալիստական պետականության զարգացման մասին:

Եվ այդ կապակցությամբ Լենինը հանգամանորեն քննարկում է պետության ապագա մահացման տնտեսական հիմքերի հարցը: Նա շեշտում է, որ պրոլետարիատի դիկտատուրան ժամանակավոր երևույթ է, որ այն անհրաժեշտ է կոմունիստական հասարակության առաջին փուլում, երբ հաղթահար-



վում են արտադրության միջոցների մասնավոր սեփականության մնացորդները, աշխատանքի բաժանման, դրա արդյունքների բաշխման հին հարաբերությունների ու ձևերի մնացորդները, դասակարգերն ու դասակարգային հակասությունները: Այդ բոլորը կհանգեցնի արտադրաուժերի այնպիսի վիթխարի զարգացման, որը հնարավորություն կընձեռի ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխումից անցնել ըստ պահանջմունքների բաշխման:

«Պետությունը լրիվին մահանալ կկարողանա այն ժամանակ,— նշում է Լենինը,— երբ հասարակությունը կիրականացնի՝ «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ իր պահանջմունքների» կանոնը, այսինքն՝ երբ մարդիկ այն աստիճան կսովորեն համակեցության հիմնական կանոնները պահպանել, և երբ... նրանք հոժարակամ կսկսեն աշխատել ըստ ընդունակությունների» (Նույն տեղը, էջ 610—611): Միաժամանակ Լենինը շեշտում է, որ դա երկարատև պրոցես է, մի ամբողջ դարաշրջան, որի ընթացքում կկատարվի բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում, երբ կծավալվի իսկապես համաժողովրդական հաշվառումն ու վերահսկողությունը արտադրության ու բաշխման նկատմամբ: Ահա այդ ժամանակ կսկսվի սոցիալիզմի զարգացման մի այնպիսի ժամանակաշրջան, երբ պրոլետարիատի դիկտատուրան, իրականացնելով այդ հիմնական խնդիրները, աստիճանաբար կվերածվի ժողովրդի ինքնակառավարման, և «..այն ժամանակ լայնորեն կբացվի դուռը կոմունիստական հասարակության առաջին փուլից նրա բարձրագույն փուլին անցնելու համար, իսկ դրա հետ միասին նաև պետության լիակատար մահացման համար» (Նույն տեղը, էջ 619):

***

Մենք փորձեցինք խիստ համառոտակի, միայն ընդհանուր գծերով ներկայացնել Վ. Ի. Լենինի երկում պետության, հեղափոխության և սոցիալիզմի փոխհարաբերության մասին մարքսիզմի հիմնական գաղափարների իմաստավորումը, դրանց հետագա զարգացումը և մարքսիզմից շեղվող բոլոր հոսանքների սնանկության մերկացումը: Լենինի աշխատությունը, որի մի շարք գաղափարներ նա լայնորեն զարգացրեց Հոկտեմբերի նախօրյակին և դրանից հետո գրած իր բազմաթիվ գործերում, վիթխարի և անգնահատելի նշանակություն ունեցավ համաշխարհային բանվոր դասակարգի ազատագրական-հեղափոխական պայքարի և, մասնավորապես, մեր երկրում սոցիալիզմի հաստատման ու նրա զարգացման էական ու բարդ հարցերի լուծման համար:

Մեր երկրի վաթսունամյա սոցիալիստական զարգացման, ինչպես և մյուս սոցիալիստական երկրների զարգացման պատմական փորձն այսօր անհերքելիորեն ապացուցում է, որ նոր, անդասակարգ հասարակության կառուցումն անհնարին է առանց բուրժուական պետական ապարատի ջարդման ու ոչնչացման և առանց պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման: Այն ցույց է տալիս այնուհետև, թե ինչպես իր հիմնական տնտեսական ու քաղաքական խնդիրները կատարելուց հետո պրոլետարիատի դիկտատուրան աստիճանաբար իր տեղը զիջում է համաժողովրդական պետությանը՝ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ավելի բարձր աստիճանին:

Դրա հիմքը մեր երկրում կատարված սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական արմատական վերափոխումներն էին, երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության փոխադրումը սոցիալիստական կոլեկտիվիզմի հիմքի վրա, կուլտուրական հեղափոխությունը, որի շնորհիվ հիմնովին փոխվեց հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը, լրիվին վերացվեցին շահագործող դասակարգերն ու խավերը, վերափոխվեցին աշխատավորական դասակարգերն ու խավերը և սկսվեց նրանց միջև սոցիալական սահմանների ջնջումը, սովետական ժողովուրդը վերածվեց սոցիալ-դասակարգային և ինտերնացիոնալ միասնության՝ պատմության մեջ իր նախորդը չունեցող մարդկային նոր բնույթի պատմական հանրության:

Դա սոցիալիզմի հենց այն աստիճանն է, երբ, ինչպես կանխատեսում էին

մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները, նա՝ հաղթահարելով անցյալի մնացորդները, հասնում է աշխատանքի արտադրողականության, սոցիալ-կուլտուրական զարգացման բարձր աստիճանի և շարունակում է զարգանալ արդեն ոչ թե անցյալից ժառանգած, այլ իր իսկ ստեղծած հիմքի վրա: Միանգամայն օրինաչափ է, որ այդ նոր աստիճանին՝ զարգացած, հասուն սոցիալիզմին անցումը մեր երկրում նշանավորվեց նաև սոցիալիստական պետականության նոր աստիճանով: Ինչպես նշված է ՍՄԿԿ ծրագրում, «Ապահովելով սոցիալիզմի՝ կոմունիզմի առաջին փուլի լրիվ և վերջնական հաղթանակը և հասարակության անցումը կոմունիզմի ծավալուն կառուցման, պրոլետարիատի դիկտատուրան կատարեց իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարեց ՍՍՀՄ-ում անհրաժեշտ լինելուց» (էջ 156—157): Իսկ դա, իր հերթին, նշանավորվեց սոցիալիստական դեմոկրատիայի հետագա բուռն ծավալմամբ:

Հասուն սոցիալիզմի պայմաններում հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման պրոցեսների, այդ թվում և սոցիալիստական պետականության դերի ու հետագա զարգացման ընթացքի իմաստավորման և գիտական ընդհանրացման գործում առանձնապես խոշոր դեր կատարեցին ՍՄԿԿ XXIV և XXV համագումարները, որոնք կանխագծեցին մեր երկրի առաջիկա զարգացման գիտականորեն հիմնավորված կուռ ծրագիր: Հասուն սոցիալիզմի մասին ուսմունքի ստեղծման գործում զգալի ավանդ հանդիսացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի մի շարք աշխատությունները, ուր հիմնավորվեցին մեր երկրում սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման նոր տենդենցները և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում: Անդրադառնալով, մասնավորապես, մեր հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման ուղղությանը, Լ. Ի. Բրեժնևը իր Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին հոդվածում նշում է. «Հասուն սոցիալիզմի փուլում, համաժողովրդական պետության պայմաններում աշխատավոր զանգվածների առավել լայն ու ակտիվ մասնակցությունը երկրի կառավարմանը ամուր կերպով հաստատվել է որպես սովետական հասարակության քաղաքական զարգացման կենտրոնական ուղղություն»:

Սոցիալիստական դեմոկրատիայի բուռն զարգացումը, մեր երկրում պրոլետարիատի դիկտատուրայի վերաճումը համաժողովրդական պետության իրենց պետական-իրավական վավերագրումն ստացան ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ: Սահմանադրությունը ո՛չ միայն վավերագրում է, որ մեր պետության հիմքն այսօր բոլոր դասակարգերի ու խավերի կուռ դաշինքն է, այլև օրենսդրորեն հաստատում է պետության և անձի այնպիսի փոխհարաբերություններ, որոնք ապահովում են անձի ամենալայն իրավունքներ, այդ իրավունքների իրականացման ռեալ պայմաններ ու միջոցներ և միաժամանակ հիմնավորում են անձի պատասխանատվությունը հասարակության առջև՝ հասարակական գործերի ամբողջ ընթացքի համար:

Սոցիալիզմի բուրժուական քննադատները և նրանց սպասարկուները բանվորական շարժման մեջ այսօր փորձում են ցույց տալ, թե իբր ՍՍՀՄ-ում «պետության մահացման ոչ մի նշան չկա»: Անշուշտ, նրանց համար դժվար, ավելին՝ անհնար է հասկանալ, որ պետության զարգացման բնագավառում մեր երկրում կատարվող պրոցեսները հենց պետության «մահացման» ռեալ դրսևորում են, հասկանալ, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ նստաշրջանում, որ «...սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման համեմատ տեղի է ունենում մեր պետականության աստիճանական վերաճում կոմունիստական հասարակական ինքնավարության: Այս պրոցեսը, իհարկե, տևական է, բայց առաջ է գնում անշեղորեն»:

Սոցիալիստական համաժողովրդական պետությունն այսօր հանդես է գալիս ոչ միայն որպես մեր երկրում կոմունիստական հարաբերությունների հաստատման հզոր լենք, այլև որպես ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման ու լարվածության թուլացման առաջամարտիկ, ամեն տեսակ բռնության և մարդու իրավունքների սահմանափակման դեմ, սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի դրոշակակիր:

# ՕՐԻՆԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՐԴՆԵՐԻ ԱՌԱՎԵԼ ՕՐԻՆԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ

**Ա. Մ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի
նախագահի առաջին տեղակալ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակով ո՛չ միայն իրական նախադրյալներ ստեղծվեցին սովետական երկրի արտադրաուժերը նոր հունով զարգացնելու, այլև հանրային արտադրահարաբերությունները կոմունիստական սկզբունքներով վերափոխելու համար: Դժվարագույն պատմական այդ խնդիրները լուծվեցին աշխատավորական միլիոնավոր զանգվածների հերոսական ջանքերով և միահամուռ կամքով: Բայց չէ որ բուրժուակալվածատիրական կարգերը տապալած բանվորներն ու գյուղացիներն իրենց հոգևոր կուլտուրայով ու գիտելիքների պաշարով, ցավոք, տակավին հարուստ չէին. բնակչության մեծ մասը գրագետ չէր:

Սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին, մեր հայրենիքի բազմազգ ժողովուրդների համակ կյանքը սոցիալիստական դարձնելու համար մեզ պակասում էին և հսկայական նյութական միջոցներ, գրագիտություն ուսուցող հարյուր հազարավոր մարդիկ: Հեղափոխության առջև ծառացած այդ առեղծվածը հաջողությամբ լուծվեց այն բանի շնորհիվ, որ երկրում հետևողականորեն ու կարճ ժամկետում կենսագործվեց կուլտուրական հեղափոխության լենինյան ծրագիրը. ծրագիր, որի համաձայն՝ կոմունիզմ կերտողներին անհրաժեշտ է սեփական հոգևոր աշխարհը հարստացնել մարդկության առաջավոր մտքի հասումներով:

ՍՍՀՄ ժողովուրդները պատմության մեջ աննախընթաց մասշտաբով իրագործելով սոցիալիզմի կառուցման ՍՄԿԿ պլանը, հիմնովին փոփոխեցին թե՛ կյանքի պայմանները, թե՛ սեփական հոգևոր աշխարհը: Հետևաբար, կուլտուրական հեղափոխությունը, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրինաչափություններից մեկը, փաստորեն սկզբնավորեց մարդկության վերընթացի այն փուլը, երբ, Մարքսի խոսքերով ասած, մարդկային կարողությունների զարգացումն ըստ էության դառնում է ինքնանպատակ:

Նոր կյանք կերտողներին Լենինն ուսուցում էր, որ պրոլետարական կուլտուրան պետք է լինի օրինաչափ զարգացումը գիտելիքների այն պաշարի, որը մշակել է մարդկությունը կապիտալիստական հասարակության, կալվածատիրական հասարակության, չինովնիկական հասարակության ճնշման ներքո (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 348—349): Նոր աշխարհ կերտող հեղափոխական պրոլետարիատը, շեշտում էր Լենինը, կոչված է բացառելու շահագործողների ռեակցիոն կուլտուրան, քննադատորեն վերամշակելու անցյալի հոգևոր ժառանգությունը՝ յուրացնելու և զարգացնելու դրա դեմոկրատական տարրերը: Այսօր արդեն սոցիալիստական կուլտուրան, որն ստեղծվեց սովետական կարգերի վաթսուն տարիներին, խնամքով պահպանում է այն ողջ արժեքավորը, ինչ ստեղծել է առաջավոր մարդկությունը հազարամյակների ընթացքում,

այն ամենը, ինչ իրոք հարստացնում է նոր մարդու հոգևոր աշխարհը, նպաստում նոր կյանքի կերտման գործին։

Սույն ճշմարտության ցայտուն ապացույցներից է ՍՍՀՄ Գերագույն սովետի հրապարակած (1976 թվականի հոկտեմբեր) օրենքը պատմական, նյութական ու հոգևոր արժեքները պահպանելու վերաբերյալ։ Արժեքներ, որոնք ժողովրդի նյութական ու հոգևոր կուլտուրաների խոսուն վկաներն են, նրա անկապտելի ազգային հարստությունը։

Այս առումով անհրաժեշտ է նշել, որ գնահատելի գործ է արված սովետական կարգերի տարիներին։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Գերագույն սովետի՝ պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման վերաբերյալ օրենքը (1977 թ., դեկտեմբեր) կոչված է խոշոր դեր խաղալու աշխատավորության հայրենասիրական բարոյագեղագիտական դաստիարակության գործում։

Մեր մեծ հայրենիքում պատմության ու կուլտուրայի հուշարձանները ժողովրդի սեփականությունն են. այստեղ բոլոր պայմաններն ստեղծվում են դրանց պահպանության, հանուն աշխատավորության շահերի դրանց արդյունավետ օգտագործման համար։

Հայտնի է, որ մեր հանրապետության տերիտորիայում կան շուրջ չորս հազար պատմական հուշարձաններ, որոնց մի մասը մեզ հասել է հնագույն դարերից։ Մեր նախնիների վարած կյանքի, ազատության ու ազգային անկախության համար մղած հերոսամարտերի լուռ վկաներն են դրանք։ Հանրապետության տարածքով մեկ սփռված ճարտարապետական անկրկնելի բազում նմուշները մեր ժողովրդի հոգևոր թռիչքի հոյակապ կոթողներն են։ Հիրավի, ճարտարապետությունը հայ ժողովրդի մշակույթի այն մնայուն կերտվածքներից է, որով, իր ազգային էպոսի, պատմագրության, միջնադարյան քնարերգության, մանրանկարչության հետ մեկտեղ, նա հարստացրել է համամարդկային արժույթների գանձարանը։

Հետևաբար, մեր ժողովրդի սոցիալիստական վերածննդի այս ժամանակահատվածում անցյալի կուլտուրայի հուշարձանների պահպանման հարցն առանձնակի նշանակություն է ստանում և դրանով իսկ բազմապատկում մեր պատասխանատվությունն այս խնդրում։ Սակայն չմոռանանք հիշատակել, որ թեև ծանրակշիռ ժառանգություն ենք ստացել անցյալից, բայց իրականում հազվադեպ ենք հնարավորություն ունեցել ժողովրդի տաղանդով ստեղծված այդ ժառանգությունը պահպանելու և, որ գլխավորն է՝ այն օգտագործելու։ Այդ ժառանգությունը պահպանելու և օգտագործելու հնարավորություն ստացանք պատմական այն բախտորոշ շրջադարձից հետո, երբ Հոկտեմբերյան հեղափոխության գաղափարները, լենինյան ազգային քաղաքականությունը խաղաղություն ու պետականություն բերին մեր ժողովրդին։

Յուրաքանչյուր ժողովրդի նյութականացած անցյալը դրսևորվում է նաև նրա պատմաճարտարապետական հուշարձաններում, որոնք պատմամշակութային խոր իմաստ ու մեծ նշանակություն ունեցող արժույթներ են։ Ուստի, պատահական չէ, որ նորաստեղծ սովետական պետության առաջին իսկ տարվա մի քանի դեկրետները վերաբերում էին անցյալի կուլտուրայի ժառանգության պահպանմանը։

Չնայած Սովետական Հայաստանի ժառանգած ծայրաստիճան քայքայված ժողովրդական տնտեսությանը, համենայնդեպս նկատում ենք, որ անգամ վերականգնման այդ ծանր տարիներին, պատմական հուշարձանները կորստից փրկելու, պահպանելու պետական մտահոգություն է դրսևորվել։ Տակավին 1923 թվականին հանրապետությունում ստեղծվել է հնությունների պահպանության կոմիտե։ Հայաստանի սովետական նորաստեղծ պետությունը մեր աշխատավորների կերտած դարավոր գանձերին տեր ու հոգացող է եղել։ Կանգուն ու կիսավեր տաճարների, ամրոցների, մատուռների, կամուրջների, իշխանատների սրբատաշ ու մամռածածկ որմերին առաջին անգամ երևացին՝ «Հուշարձանները պահպանվում են պետության կողմից, փչացնողները պատժվում են օրենքով» ազդերը։



Պետությունն ստանձնեց ճարտարապետական արվեստի մի շարք գլուխգործոցների անմիջական պահպանությունը, ինչպիսիք են՝ Գառնիի հեթանոսական տաճարն ու Զվարթնոցը, Հռիփսիմեն ու Երերույքի վանքը, Արուճն ու Մարմաշենը, Տաթևն ու Հաղարծինը, Հաղպատն ու Սանահինը, Գեղարդն ու Համբերդը և բազմաթիվ այլ հուշարձաններ։ Պետության տրամադրած միջոցներով սկսեցին հայտնաբերվել, պեղվել շատ ավելի վաղեմի պատմական հուշարձաններ, ինչպես՝ Շենգավիթի բնակատեղին, Կարմիր բլուրը, ավելի ուշ՝ Արին բերդը, Մեծամորը և այլն։

Դա մեծ գործի սկիզբն էր։ Շատ չանցած, 30-ական թվականներին, Սովետական Հայաստանի կառավարությունը կայացրեց պատմական հուշարձանների պահպանման ու օգտագործման հետ առնչվող մի շարք այլ որոշումներ, որոնց կիրառումն իրոք նպաստեց գործի իրական բարելավմանը։ Մշակվեցին պատմահնագիտական հուշարձանների պահպանման էական սկզբունքներն ու ձևերը, որոշվեց վերանորոգման աշխատանքներ կատարելիս հնագիտական հսկողություն սահմանել, պատժիչ միջոցներ գործադրել պատմական հուշարձանները փչացնողների՝ ոչնչացնողների նկատմամբ։ Այդուհանդերձ, պատմական հուշարձանների պահպանության գործն այդ տարիներին, ցավոք, չդարձավ համաժողովրդական. ոմանք պատշաճ խորությամբ չըմբռնեցին այդ գործի վեհիմաստությունն ու իրական օգտակարությունը։

Ընդամենը երեք տասնյակ տարիներ անցան (Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանը ներառյալ), սկսվեց երկրի արտադրաուժերի բուռն վերելքի ժամանակաշրջանը։ Բուժվեցին պատերազմի խոր վերքերը։ Վիթխարի մասշտաբներով, նորագույն գիտության ու տեխնիկայի համատարած կիրառմամբ, նյութական ամուր հիմքեր ստեղծվեցին մեր մեծ հայրենիքի բարգավաճման ու ծաղկման համար։ Ահա թե ինչու պատմական հուշարձանների պահպանման ու վերականգնման գործը վաթսունական թվականներին վերըսկսվեց անհամեմատ մեծ մասշտաբով։

Այդ ժամանակահատվածում, աշխատավորների ձեռներեցությամբ, կազմակերպվեց պատմական հուշարձանների պահպանության ընկերությունը, որի հանրօգուտ գործունեությունը շատ շուտով ակներև դարձավ։ Այն ո՛չ միայն խոր հետաքրքրասիրություն սերմանեց պատմական հուշարձանների նկատմամբ, այլև կարողացավ հայթայթել նյութական միջոցներ, որոնց օգտագործմամբ վերականգնվեցին ավերակների վերածված ճարտարապետական մի շարք հույժ արժեքավոր կոթողներ։ Ի դեպ, չմոռանանք վերհիշել հին բոլշևիկ, այս գործի խորագիտակ, երեսնական թվականներին ՀՍՍՀ Կենտգործկոմի նախագահ Սերգո Մարտիկյանի նախաձեռնությունը Երևան—Գեղարդ ճանապարհ կառուցելու գործում։

Չենք կասկածում, որ իր երեք հարյուր հազար անդամներով և չորս հազար կոլեկտիվ անդամներով, ընկերությունն ի վիճակի է առավել մեծ մասշտաբներով ու ավելի շոշափելի արդյունավետությամբ շարունակելու սկսած գործը։

Այստեղ նշենք և այն, որ 1967 թ. Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը հատուկ որոշում կայացրեց պատմական հուշարձանների պահպանման գործի բարելավման վերաբերյալ։ Այդ որոշմամբ պետշինին կից ստեղծվեց հուշարձանների վերականգնման ու բարեկարգման հատուկ վարչություն, և գործնական խնդիրներ առաջադրվեցին ինչպես այդ վարչությանը, նույնպես և ՀՍՍՀ ԳԱ-ին, կուլտուրայի մինիստրության պատմական հուշարձանների պահպանման հանրապետական ընկերությանը։

ՀՍՍՀ 7-րդ գումարման Գերագույն սովետի 5-րդ նստաշրջանում քննարկվեց կուլտուրայի հուշարձանների պահպանության վիճակը հանրապետությունում և հրապարակվեց օրենք, որի շնորհիվ զգալիորեն մեծացավ համաժողովրդական շահագրգռությունը հուշարձանների պահպանության նկատմամբ։ Բարձրացվեց քաղաքային ու շրջանային սովետների, ինչպես և հանրապետական համապատասխան մարմինների պատասխանատվությունն այդ գործում։

Սովետական մեր հայրենիքի ընթացիկ տասնամյակը, որը նշանավորվեց ժողովրդի աշխատանքային ու քաղաքական մեծ վերելքով, հատկապես ժողո-

վրդական գործ են։ 1976 թվականին ՍՍՀՄ Գերագույն սովետի 9-րդ գումարման 5-րդ նստաշրջանը քննության առավ պատմական և կուլտուրական հուշարձանների պահպանման ու օգտագործման մասին ՍՍՀՄ օրենքի նախագիծը և ապա օրենք հրապարակեց, որով մի անգամ ևս հաստատվեց, որ պատմության ու կուլտուրայի հուշարձանները ժողովրդի կյանքի, պատմական իրադարձությունների, հասարակության ու պետության զարգացման հետ կապված կառույցները, հիշարժան վայրերն ու պարագաները, պատմական, գիտական, գեղարվեստական և կուլտուրական այլ արժեքավոր նյութական ու հոգևոր ստեղծագործություններ համաժողովրդական սեփականություն են, և պետությունը պահպանում է՝ միտելով ապահովել դրանց անվտանգությունը ներկա և գալիք սերունդների համար, արդյունավետ օգտագործելով գիտական ուսումնասիրության և աշխատանքային, կոմունիստական դաստիարակության նպատակով։

Տեղին է շեշտել, որ ՍՍՀՄ նոր Սահմանադրության ոգուց ելնելով, առաջին անգամ է պատշաճ խորությամբ ու ծավալով մշակված հանրապետության Գերագույն սովետի՝ հինգ հատվածներից ու 49 հոդվածներից բաղկացած պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման վերաբերյալ օրենքը։

Ամենից առաջ պետք է հասնել այն բանին, որ մեր պատմական հուշարձաններն այսուհետ չհամարվեն լոկ իրենց դարն ապրած հինավուրց կառույցներ, այլև դառնան անցյալի այն վկաները, որոնք օգնում են մեզ՝ ճիշտ հասկանալու մեր ժողովրդի ստեղծագործական խառնվածքը, նպաստում արդի խնդիրների առավել հաջող լուծմանը։ Պատմական հուշարձանների վերականգնման գործն այսօր արդեն դարձել է շատ ընդարձակ մի բնագավառ, ուր միահյուսվում են պատմության, հնագիտության, ճարտարապետության, որմնանկարչության, ինչպես և շինարարության հետ կապված շատ խնդիրներ։

Այժմ պատմաճարտարապետական ու հնագիտական հուշարձանների պահպանությունն ու վերականգնումն իրականացնում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին կից պետշինի համապատասխան վարչության արհեստանոցը։ Պահպանվող կոթողների համար կազմված են գիտական անձնագրեր, որոնք պարունակում են հակիրճ տեղեկություններ կառուցվածքների տիպի, կառուցման ժամանակի, վերանորոգումների և այլ հարցերի վերաբերյալ, բայց այդ անձնագրերը, նոր պահանջների համաձայն, կարոտ են գիտական ճշգրտումների ու լրացումների, որպեսզի դրանցում արտացոլվի հուշարձանների ներկա տեխնիկական վիճակը։

Լուրջ ճշգրտումների, գիտական հանգամանալի տեղեկություններով լրացվելու կարիք ունեն և մեր հուշարձանների պատերին փակցված ցուցանակները։ Կան նաև հուշարձաններ ու հնագիտական վայրեր, որ չունեն նման ցուցանակներ։

1978 թվականի մարտի 1-ից կիրառվեց «Պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին» Հայկական ՍՍՀ օրենքը։ Նոր օրենքով պատմական հուշարձանների ու հնագիտական վայրերի պահպանությունը տեղերում հանձնարարված է քաղաքային, շրջանային, ավանային, գյուղական սովետներին։ Ժամանակն է, որ այդ սովետներն ինչպես հարկն է կատարեն օրենքով իրենց վրա դրված պարտականությունները, ելնելով ո՛չ միայն պաշտոնական պատասխանատվության զգացումից, այլև մեր ժողովրդի անցյալ սերունդների ստեղծագործական աշխատանքի նկատմամբ տածած հարգանքից ու երախտագիտությունից։

Կան տեղական սովետներ, որոնք, հիրավի, պատասխանատվության խոր գիտակցությամբ են վերաբերվել այդ գործին։ Այսպես՝ վերջին տարիներին այդ հարցը քննարկվել է Իջևանի, Եղեգնաձորի, Դիլիջանի, Գորիսի և այլ շրջանների ժողովրդական դեպուտատների գործադիր կոմիտեների նստաշրջաններում, գործկոմների նիստերում, բացահայտվել են այդ բնագավառում եղած թերությունները և կոնկրետ միջոցառումներ մշակվել այդ ասպարեզում տարվելիք հետագա աշխատանքների վերաբերյալ։ Սակայն դեռևս ոչ բոլոր տեղական սովետներն են պատշաճ պատասխանատվությամբ վերաբերվում այդ գործին։



Դրությունն առանձնապես վատ է Աշտարակի, Արթիկի, Աբովյանի շրջաններում։ Օշականի, Առինջի, Աշտարակի, Փարպիի, Կոշի հուշարձանները, տեղական կազմակերպությունների թողտվության հետևանքով, ձևափոխվել են, կամ ոչ իրավասու կազմակերպություններն ինքնակամ վերանորոգել են դրանք։

Հուշարձանները և դրանց տարածքը մշտապես ու լիովին բարեկարգ վիճակում պահելու նպատակով օրենքով նախատեսված է ստեղծել արգելափակիչ գոտիներ, որոնցում կատարվող ամեն մի նոր շինարարություն կամ վերափոխում պետք է մանրազնին քննարկվի։ Այս առնչությամբ այժմ Հայաստանի՝ հուշարձաններով հարուստ քաղաքների, գյուղերի հատակագծերում նախատեսված են արգելափակիչ գոտիներ։ Այդ գոտիների մասին է հատկապես շեշտված օրենքում։ Սակայն այդ դեռ չի նշանակում, թե հնագույն հուշարձանները պետք է արհեստականորեն ներառվեն ժամանակակից կառույցների կառուցվածքում։ Ամենևին։ Հուշարձանների պահպանության պրոբլեմներից մեկն էլ հենց այն է, որ այդ կոթողները ճարտարապետական գեղեցիկ մտահղացումներով կապվեն արդի կառուցապատումների հետ։ Եթե հուշարձաններին տրվի այդպիսի ակտիվ նշանակություն, ապա հնարավոր կլինի կատարել օրենքի մյուս պահանջը— օգտագործել դրանք ժամանակակից կարիքների համար։ Այդ հարցերի լուծման բնագավառում շատ ուսանելի փորձ ունեն մեր երկրի մայրաքաղաքը՝ Մոսկվան, Լենինգրադը, Կիևը, Տալինը և շատ այլ քաղաքներ ու բնակավայրեր։

Պետք է նշել, որ շատ կոթողներ մինչև օրս էլ գործող կառույցներ են և համապատասխանաբար օգտագործվում են արդի կարիքների համար։ Օրինակ, ուրարտական ջրանցքները, որոնք շարունակում են ջուր մատակարարել դաշտերին, կամ՝ պատմական կամուրջները, որոնց վրայով այսօր ևս անցնում է նույնիսկ գերծանր տրանսպորտը։

Իրենց երկարակեցությամբ հայտնի են նաև բազմաթիվ շենքեր, որոնք օգտագործվում են թանգարանային, համերգային ու կուլտուրական այլ նպատակներով։ Հուշարձանների նման օգտագործումը կարելի է ընդլայնել, բայց, բնականաբար, սոսկ այն դեպքում, եթե դա չի վնասում հուշարձանին։ Օգտագործման ուտիլիտար կողմի հետ մեկտեղ, հուշարձանները պետք է ներկայացվեն նաև որպես արվեստի արժեքավոր նմուշներ, որպես մեր նախնիների ստեղծագործական մտքի էվոլյուցիա, չընդհատվող մի պրոցես, որի ուսումնասիրությունը դրսևորի անցյալի շինարարական արվեստի, մշակույթի ու պատմական կյանքի զարգացման օրինաչափություններն ու հնարավորությունները։

Ճարտարապետական հուշարձանների պահպանման ու օգտագործման համար առավել կարևոր են դրանց վերանորոգման ու բարեկարգման աշխատանքները, որոնց նպատակն է ամրացնել հուշարձանները, ապահովել դրանց առավելագույն երկարակեցությունը։ Այս գործը բուռն թափով, աննախադեպ չափերով ծավալվեց հատկապես վերջին տարիներին։

Պետշինը պատմական հուշարձանների պահպանման ու վերականգնման գործն ավելի պատշաճ հիմքերի վրա դնելու նպատակով կազմել է հնգամյա պլան, հերթագրել հուշարձանների վերանորոգումը, քանի որ ինչքան էլ մեծ լինի ցանկությունը, մեկ տարում անհնար է բոլոր կոթողները վերականգնել։ Ուստի և անհրաժեշտ է հնարավորին չափ մեքենայացնել հուշարձանների վերանորոգման ու տեխնիկական ամրացման հետ կապված բոլոր պրոցեսները։ Անհրաժեշտ է նաև հանրապետության հեռավոր և հուշարձաններով առավել հարուստ շրջաններում ստեղծել պետշինի հուշարձանների վերանորոգման արհեստանոցի մասնաճյուղեր՝ վերանորոգման գործը հուշարձաններին ավելի մոտեցնելու նպատակով։

Հույժ կարևոր է նաև հուշարձանները վերանորոգող մասնագետների, որակյալ կադրերի պատրաստումը։ Ինչպես հայտնի է, հուշարձանների վերանորոգումը պահանջում է բացառիկ հմտություն, մասնագիտական բարձր որակավորում։ Մինչդեռ մեզ մոտ օրըստորե պակասում են հմուտ քարագործները։ Այս ասպարեզում մեծ անելիքներ ունեն պետշինը, հուշարձանների պահպանու-

թյան կոմիտեն։ Այդ ամենը հաջողությամբ կատարելու նպատակով անհրաժեշտ է ամրապնդել պետշինի հուշարձանների վերանորոգման ու բարեկարգման արհեստանոցի նյութատեխնիկական բազան։

Վերանորոգման աշխատանքներին զուգընթաց, պակաս կարևոր չեն նաև հուշարձանների շրջակայքի բարեկարգումը, կանաչապատումը, ինչպես և դեպի հուշարձանները տանող ճանապարհների կարգավորումը, նոր ճանապարհների կառուցումը։ Դժբախտաբար, ճանապարհների բացակայության կամ նկատ ճանապարհների անմխիթար վիճակի պատճառով դեռևս բավականին դժվար է մոտենալ առանձին պատմական արժեքավոր կոթողների։

Հուշարձանների պահպանության գործի պրոպագանդման, դրա ընթացքի լուսաբանման առումով զգալի անելիքներ ունեն գիտությունների ակադեմիայի պատմաբանասիրական հանդեսը, պետական համալսարանի «Բանբերը», «Սովետական արվեստ», «Սովետական Հայաստան» ամսագրերը, որոշ հրատարակչություններ, հանրապետական պարբերական մամուլը և մյուս ճանդեսները. նրանք պետք է ծրագրված, սիստեմատիկաբար լուսաբանեն պատմական հուշարձանների պահպանության և օգտագործման, ինչպես նաև օրենքի կենսագործման հետ կապված հարցերը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի, նույնպես և մեր հանրապետության Գերագույն սովետի ընդունած օրենքները պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման վերաբերյալ մի նոր վկայությունն են այն բանի, թե կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն ինչպիսի ուշադրություն են նվիրում մեր հասարակության հոգևոր կյանքին։ Նման վերաբերմունքը բխում է զարգացած սոցիալիստական հասարակարգի էությունից, այն խնդիրների էությունից, որ ՍՄԿԿ XXV համագումարում տված զեկուցման մեջ առաջադրեց Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։

Պատմության ու կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին Հայկական ՍՍՀ օրենքը մեծապես կնպաստի ինչպես հարկն է կազմակերպելու մեր կուլտուրայի հարուստ ժառանգության պահպանումն ու օգտագործումը։

Այս հույժ կարևոր և միաժամանակ ունական գործը պետք է գտնվի նաև սովետական օրգանների, մշակութային կազմակերպությունների ուշադրության ու հոգատարության կենտրոնում։

Ընդունված օրենքը մեծ պատասխանատվություն է դնում սովետական իշխանության տեղական օրգանների, քաղաքային, շրջանային և գյուղական սովետների, պետական ու հասարակական կազմակերպությունների վրա։ Կենսագործելով ժողովրդական տնտեսության վիթխարի խնդիրները՝ չպետք է մոռանալ, որ անցյալի կուլտուրական ժառանգության հարուստ արժեքները ժողովուրդների հոգևոր պահանջներին ի սպաս դնելն այդ խնդիրների բաղկացուցիչ մասն է։

Հարուստ, բազմակողմանի ու արժեքավոր մշակութային ժառանգություն է կտակել մեզ հայ ժողովրդի բազմադարյան պատմությունը։ Այդ ժառանգության մեջ մեր անցյալն է, պատմության հիշողությունը, մեր ստեղծագործական սխրանքը։ Աչքի լույսի պես պահպանենք մեզ հասած այդ ժառանգությունը և անվթար վիճակում հանձնենք գալիք սերունդներին։ Սա է օրինական ժառանգորդների առավել ծրինական պարտքը։

* * *

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՎ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Ա. Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ գրականության մեջ իր նշանակությամբ կարևորագույն պրոբլեմներից մեկը անհատի պրոբլեմն է։ Դրանով զբաղված են ո՛չ միայն տարբեր գիտությունների առանձին ներկայացուցիչներ, այլև գիտական խոշոր կոլեկտիվներ։ Եվ դա միանգամայն բնական է, քանի որ ժամանակակից հասարակագիտության զարգացման կարևոր առանձնահատկություններից մեկը մարդու պրոբլեմի համակողմանի ուսումնասիրությունն է։

ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում, «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղություններում», ՍՍՀՄ նոր Սահմանադրության դրույթներում առանձնահատուկ շեշտվեցին զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալական քաղաքականության հիմնական խնդիրների ու ստրատեգիայի, հասարակական հարաբերությունների համակարգի գիտական կառավարման ու կարգավորման, անհատի համակողմանի զարգացման սոցիալ-տնտեսական պայմանների բարելավման, սովետական ապրելակերպի հետագա զարգացման հարցերը։

Անհատի պրոբլեմի համակողմանի գիտական մշակման հետ անմիջականորեն առնչվող տեսական-մեթոդաբանական հարցերից մեկը հասարակական և անհատական կեցության հարաբերակցության հարցն է։ Չպետք է հաշտվել այն մտայնության հետ, երբ հասարակական կեցությունը սոցիալիզմի պայմաններում համարվում է որպես մեկընդմիշտ տրված անփոփոխ վիճակ, երբ կեցության բնույթի պահպանման հետ միասին, անտեսվում է նրա ռեալ բովանդակության, մակարդակի, վերարտադրության կոնկրետ պատմական և սոցիալական պայմանների փոփոխման հանգամանքը։ Տեսական և գործնական առումով հատկապես վնասակար են հասարակական և անհատական կեցության փոխպայմանավորվածության անտեսման միտումները, որոնք անհնարին են դարձնում անհատի հետ կապված առանձին պրոբլեմների գիտական լուրջ ուսումնասիրությունը։

***

Սոցիալիզմի պայմաններում հասարակական և անհատական կեցության հարաբերակցության առանձնահատկությունների բացահայտումն ամենից առաջ ենթադրում է, թեկուզև ընդհանուր գծերով, ներկայացնել ելակետային հասկա-

ցությունների բովանդակությունը: Տվյալ դեպքում նման հասկացություններ են «հասարակական կեցությունը» և «անհատական կեցությունը»:

Ի՞նչ է հասարակական կեցությունը: Որքան էլ տարօրինակ թվա, բայց պետք է նշել, որ այս հարցի վերաբերյալ մեզանում ընդհանուր տեսակետ դեռևս գոյություն չունի: Որոշ հեղինակներ այն կարծիքին են, որ հասարակական կեցությունը սահմանափակվում է հասարակության լոկ նյութական-տնտեսական հարաբերությունների ամբողջությամբ (տե՛ս В. А. Демичев, Общественное бытие и общественное сознание, механизмы их взаимосвязи, Кишинев, 1970): Համաձայն մեկ այլ ըմբռնման, վերոհիշյալ հայեցակետը շատ է նեղացնում «հասարակական կեցություն» կատեգորիայի բովանդակությունը, սահմանափակելով այն զուտ նյութական-տնտեսական հարաբերություններով: Ուստի, առաջարկվում է հասարակական կեցության մի այնպիսի բնորոշում, որը ներառնի հասարակական հարաբերությունների բոլոր ձևերի ամբողջությունը: Նման բնորոշման դեպքում հասարակական կեցությունը նույնանում է մարդկանց, սոցիալական խմբերի ու դասակարգերի անմիջական գործունեության, կենսափորձի հետ: Այլ կերպ ասած, կեցության սահմանման հիմքում դրվում է գոյի, ռեալության սկզբունքը (տե՛ս նույն տեղը): Այս տեսակետը նույնպես քննադատվում է, որովհետև նրանում անտեսվում է «հասարակական կեցություն» կատեգորիայի մեթոդաբանական նշանակությունը: Բանն այն է, որ «հասարակական կեցություն» և «հասարակական գիտակցություն» հասկացությունները, տարբերակելով հասարակական կյանքի նյութական, սոցիալ-քաղաքական և հոգևոր ոլորտները, սահմանելով դրանց միջև որոշակի սուբորդինացիա՝ դրանով իսկ ձեռք են բերում փիլիսոփայական հասկացություններին բնորոշ մեթոդաբանական նշանակություն: Մինչդեռ հասարակական կեցության վերոհիշյալ բնորոշման մեջ անտեսվում է այս կարևոր հանգամանքը:

Վերջապես, անհնարին է անտեսել մարքսիստական այն հիմնարար թեզը, որ հասարակական կյանքը բաղկացած է երեք ոլորտներից՝ նյութական-տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր-գաղափարական հարաբերություններից: Եթե հասարակական կեցությունը սահմանափակենք զուտ նյութական-տնտեսական հարաբերություններով, իսկ հասարակական գիտակցությունը՝ հոգևոր-գաղափարական, ապա պարզ չեն դառնում սոցիալ-քաղաքական հարաբերությունների տեղն ու նշանակությունը հասարակական հարաբերությունների համակարգում: Ճիշտ է, սոցիալ-քաղաքական հարաբերությունները վերնաշենքային բնույթի երևույթներ են, վերջին հաշվով պայմանավորված են նյութական-տնտեսական հարաբերություններով, սակայն ներքին էությամբ ու բնույթով ոչ նյութական են և ոչ էլ հոգևոր և ունեն իրենց ուրույն դերը հասարակության հոգևոր կյանքի դետերմինավորման մեջ: Հարցի էությունն այն է, որ նյութական-տնտեսական հարաբերությունների գոյության, վերարտադրության և զարգացման պրոցեսը միանգամայն սուվերեն, մեխանիկորեն իրացվող պրոցես չէ: Ամեն մի հասարակություն, իր կյանքի նյութական հիմքի պահպանման և ամենօրյա վերարտադրության համար, մշակում և գործառնության մեջ է դնում որոշակի սոցիալ-քաղաքական, կառավարչական ու կազմակերպական միջոցներ: Որքան կատարյալ են հասարակության սոցիալ-քաղաքական, կառավարչական ու կազմակերպական հարաբերությունները, այնքան արդյունավետ է նրա նյութական և հոգևոր գործունեությունը:

Նյութական-տնտեսական հարաբերությունները կոնկրետ մարդկային իմաստ են ստանում միայն սոցիալ-քաղաքական, կառավարչական-կազմակերպական և այլ հարաբերությունների ձևով: Ուրեմն, հասարակության նյութական-տնտեսական և սոցիալ-քաղաքական հարաբերությունների տարբերակումը խիստ հարաբերական է: Հասարակական գիտակցության մեջ նյութական-տնտեսական հարաբերությունները շատ հաճախ արտացոլվում են միջնորդավորված, իսկ տվյալ դեպքում նման միջնորդավորող օղակի դեր են կատարում հենց սոցիալ-քաղաքական, կառավարչական-կազմակերպական հարաբերությունները: Այսպիսով, հասարակական կեցությունը հասարակության



նյութական-տնտեսական և սոցիալ-քաղաքական հարաբերությունների ամբողջությունն է, որը տարբեր մակարդակներով ու ձևերով արտացոլվում է հասարակական գիտակցության մեջ: «Հասարակական կեցություն» հասկացությունը, իմացաբանական տեսանկյունից, արտահայտում է ոչ թե տնտեսական ու սոցիալ-քաղաքական հարաբերությունների կոնկրետ հատկություններն ու կառուցվածքը, այլ միայն այն հանգամանքը, որ այդ հարաբերությունները գոյություն ունեն օբյեկտիվորեն և պայմանավորում են հասարակական գիտակցությունը:

Ըստ երևույթին հասարակական կեցության սահմանումն ինքնին բավարար հիմք չի տալիս գիտականորեն իմաստավորելու հասարակության հոգևոր կյանքի բոլոր տեղաշարժերն ու երևույթները: Այստեղ չափազանց կարևոր է անհատական կեցության բովանդակության, նրանում իրականացվող փոփոխությունների, հասարակական կեցության հետ նրա հարաբերակցության նկատառումը: Սոցիալական վերահսկողության ողջ պրոցեսը, առանձին քաղաքացիների ու խմբերի հասարակայնորեն անհարիր վարքն ու գիտակցությունը, դրանք կարգավորող ու պայմանավորող սոցիալական ու բարոյական նորմերը բացահայտելիս շատ կարևոր է հասարակական և անհատական կեցության դիալեկտիկայի, ռեալ գոյության մեխանիզմների նկատառումը:

Ամենահիմնական գծերով, ընդհանուր սոցիոլոգիական առումով անհատական կեցությունը հասարակական կեցության ամենօրյա վերարտադրության, ռեալ գոյության պրոցեսն է: Հասարակական անդեմ հարաբերությունները, հասարակական կեցությունը կոնկրետ մարդկային իմաստ ու արժեք են ստանում անհատական կեցության ձևով: Այստեղից արդեն կարելի է ենթադրել, որ անհատական կեցությունը ոչ այնքան յուրահատուկն ու անկրկնելին է, որով կոնկրետ մարդկանց կեցությունը տարբերվում է մեկը մյուսից, այլ այն տիպականը, որն առկա է մարդկային որոշակի հանրությունների կենսագործունեության անմիջական պայմաններում: Այլ կերպ ասած, անհատական կեցության ռեալ գոյությունն իր հերթին հնարավոր է միայն կոլեկտիվ կեցության ձևով: Հենց կոլեկտիվում է, որ անհատական կեցությունն ու գործունեությունը միակցվում են հասարակական կեցությանն ու գործունեությանը, որի հետևանքով մարդու վարքի ու գիտակցության արտաքին դետերմինավորումն իրականանում է հասարակական դետերմինավորման ձևով: Այսինքն՝ հասարակական կեցությունը վերարտադրվում, մարդկային կոնկրետ իմաստ է ստանում միմիայն կոլեկտիվի, մարդկային որոշակի հանրության գործունեության մեջ: Կոլեկտիվի սոցիալական հիմնական ֆունկցիան հասարակական հարաբերությունների լիարժեք վերարտադրության, հասարակական, իրավական ու բարոյական արժույթներին հասարակության անդամներին հաղորդակից դարձնելու, անհատի և հասարակության փոխհարաբերության որոշակի բնույթի ապահովման ֆունկցիան է:

Կուսակցությունը պահանջում է հատկապես պատշաճ ուշադրություն դարձնել հասարակական հարաբերությունների, հասարակական կեցության, վերարտադրության և հետագա կատարելագործման սոցիալական միջոցների հարցին: Հասարակության գիտական կառավարման կատարելագործումն առանց հասարակական հարաբերությունների լիարժեք վերարտադրության և սոցիալական միջոցների կատարելագործման՝ հնարավոր չէ: Մյուս կողմից, հասարակության գիտական կառավարումը սոցիալիստական հասարակական հարաբերությունների լիարժեք վերարտադրության և կատարելագործման նախապայմաններից է: Եվ դա միանգամայն բնական է, քանի որ կառավարչական-կազմակերպական հարաբերությունների հաջող գործառնությունն ու կատարելագործումը հնարավոր չէ՝ առանց հասարակական հարաբերությունների ողջ համակարգի գործառնության և զարգացման կոնկրետ մեխանիզմների իմացության: Այս ամենը նշանակում է, որ հասարակության գիտական կառավարման հետագա կատարելագործման մասին ՍՄԿԿ XXV համագումարի դրույթները վերաբերում են ո՛չ միայն արտադրությանը, այլ նաև հասարակական հարաբերությունների ողջ համակարգին: Ճշմարիտ է, որ հասարակական հա-

բովանդակում է ո՛չ միայն այդ պրոցեսի ընդհանուր հասարակական էությունը, որը մշտապես համարժեք է դրա օբյեկտիվ տնտեսական հիմքին, այլև անհատական-կոլեկտիվ բնույթը, որի պահպանումը սոցիալիստական հասարակության կարևոր խնդիրներից է։

Այժմ անդրադառնանք անհատական կեցության մեջ ոչ տիպական, ոչ սոցիալիստական տարրերի կամ տատանվող անհատական կեցության խնդրին։ Սովորաբար մեզանում ավելի շատ խոսվում է տատանվող վարքի, գիտակցության, հոգեբանության, քան տատանվող անհատական կեցության մասին։ Մինչդեռ, եթե իրոք ցանկանում ենք մշակել և իրականացնել հասարակականորեն նեգատիվ երևույթների վերացման կոնկրետ, ազդու միջոցներ, ապա պետք է ելնել անհատական կեցության տատանման հնարավորությունների ու պայմանների բացահայտումից և այդ հիմքի վրա դրանց վերացման անհրաժեշտությունից։

Տատանվող վարքի, կեցության ու գիտակցության պրոբլեմն ընդհանուր է բոլոր ֆորմացիաների համար։ Տարբերությունն այստեղ այդ երևույթների մասշտաբի ու սահմանների, տիպերի ու բնույթի և, վերջապես, դրանց նկատմամբ հասարակության վերաբերմունքի մեջ է։ Սոցիալիզմի պայմաններում այդ կարգի երևույթները չունեն ներքին սոցիալ-տնտեսական պայմանավորվածություն ու դասակարգային ուղղվածություն։ Հետևաբար, դրանք կարող են ազդեցություն ունենալ միայն առանձին անհատների գիտակցության ու վարքագծի վրա։ Եվ քանի որ նման ազդեցությունները բացասաբար են անդրադառնում հասարակության վրա, ապա դրանց հաղթահարումը դառնում է սոցիալական կարևոր խնդիր։

***

Հասարակական և անհատական կեցության փոխհարաբերությունը վերլուծելիս անհրաժեշտ է խուսափել ինչպես դրանց նույնացումից, այնպես և հակադրումից։ Հասարակական և անհատական կեցությունը բացարձակապես նույնական չեն, ինչպես նույնական չեն ընդհանուրն ու եզակին։ Անհատական կեցությունը վերջին հաշվով պայմանավորված է հասարակական կեցությամբ։ Անհատի անմիջական, միջանհատական հարաբերությունները, նրա, այսպես ասած, միկրոմիջավայրը, համապատասխանում են հասարակության լայն, ոչ դիմային, մակրոհարաբերությունների բնույթին։ Հենց անհատական կեցության միջոցով է, որ մարդկանց հասարակական անդեմ հարաբերությունները դրսևորվում են որպես գիտակցված հարաբերություններ։ Բայց այդ համապատասխանությունը կամ միասնությունը չպետք է մեխանիկորեն ընկալվի։ Հասարակական կեցությունը միակերպ կաղապար չէ։ Եթե այդպես լիներ, ապա կկորչեր անհատական կեցության յուրահատկությունը, անհատականը կտարրալուծվեր հասարակականի մեջ։ Այնինչ հասարակությունը կազմող անհատներն օժտված են անկրկնելի առանձնահատկություններով, սոցիալական ընտրության լայն հնարավորություններով և այլն։ Այս ամենը վկայում է, որ անհատական կեցությունը բացարձակորեն չի նույնանում հասարակական կեցությանը։ Հասարակական միևնույն կեցության պայմաններում անհատական կեցության բազմազան տարբերակների կամ մոդելների առկայությունն ամենևին չի հակասում նրանց միասնությանը, որը իրողություն է։ Բանն այն է, որ անհատական կեցության առանձնահատկությունները, հասարակականից «տատանվելու» հակումները, ինչպես և անհատի ընտրության հնարավորությունները սահմանափակվում են հասարակական կեցության շրջանակներով, տիրապետող հասարակական հարաբերությունների բնույթով։ Հասարակական և անհատական կեցության դիալեկտիկական նույնությունը ենթադրում է նաև նրանց տարբերության ու անհամապատասխանության հնարավորությունը։ Միևնույն ժամանակ կեցության մեջ հասարակականի ու անհատականի տարբերությունը չպետք է հասցնի նրանց հակադրությանը։

Հասարակական ու անհատական կեցության հարաբերակցության դիալեկտիկան իմաստավորելու համար անհրաժեշտ է նկատի առնել, որ անհատական



կեցության տատանման մասին կարելի է և պետք է խոսվի երկու իմաստով․ Առաջին դեպքում՝ տատանվող անհատական կեցությունը՝ հասարակական հարաբերությունների լիարժեք վերարտադրությունը, անհատականի մեջ հասարակականի յուրահատուկ գոյության դրսևորումն է և պարզապես արտահայտում է անհատի սոցիալական ակտիվության և ընտրության հնարավորությունը։ Այս պարագաներում «տատանվող» անհատական կեցությունը հասարակականորեն բացասական իմաստ չի ստանում։ Երկրորդ դեպքում՝ տատանվող անհատական կեցությունը խմբային կամ անհատական առումով հասարակական հարաբերությունների ոչ լիարժեք վերարտադրության հատկանիշներից է, տատանվող վարքի, գիտակցության և հոգեբանության օբյեկտիվ հիմքը, որի հետևանքով այն ունենում է հասարակայնորեն վնասակար նշանակություն։

Այսպիսով, օբյեկտիվ չափանիշը, որից ելնելով մենք կարող ենք որոշել տատանվող անհատական կեցության դրական կամ բացասական բնույթը՝ դրանում հասարակական հարաբերությունների վերարտադրության լիարժեքությունն է, այդ վերարտադրությունն ապահովող սոցիալական միջոցների իրացումը, հասարակական և անհատական շահերի ներդաշնակությունը։

Հասարակական կեցության գործառության և զարգացման պրոցեսը սոցիալիզմի պայմաններում իրականանում է երկու՝ օրգանապես միահյուսված, փոխազդող գործոնների միջոցով. դրանցից առաջինը օբյեկտիվ, նյութական-տնտեսական գործոնն է, որը նշված պրոցեսի մշտական ու անհրաժեշտ պայմանն է, բայց ոչ կոնկրետ էությունն ու բովանդակությունը։ Այդ օբյեկտիվ հիմքի վրա ծավալվում է հասարակության, կուսակցության ու պետության, ղեկավար կադրերի ու հասարակական ակտիվի գիտակցական բազմակողմանի գործունեությունը հասարակական կեցության լիարժեք վերարտադրության ու զարգացման և դրանով իսկ նաև հասարակական մյուս հարաբերությունների կատարելագործման նպատակով։ Այս վերջին հանգամանքն էլ կազմում է հասարակական զարգացման սուբյեկտիվ գործոնի էությունը, որտեղ պետք է որոնել տատանվող նեգատիվ կեցության պատճառները։ Ամենաընդհանուր գծերով այդ պատճառներն անհատական կամ կոլեկտիվ մակարդակի վրա կառավարչական-կազմակերպական սկզբունքների, իրավական ու սոցիալական նորմերի, հրահանգների ու ցուցումների, հարցերի լուծման հասարակայնորեն մշակված եղանակների ու միջոցների, մի խոսքով, հասարակական հարաբերությունների լիարժեք վերարտադրության սոցիալական մեխանիզմների գիտակցված կամ չգիտակցված շրջանցման, ոչ լիարժեք իրացման դեպքերն են։ Իհարկե, բացառված չէ, որ նման պատճառի դերում կարող է հանդես գալ նաև հենց այդ միջոցների որոշ մասի հետագա կատարելագործման, կյանքի նոր պայմաններին հարմարեցնելու անհրաժեշտությունը։ Ընդսմին, պետք է նկատի ունենալ, որ վերոհիշյալ երևույթները կոլեկտիվի կամ անհատի մակարդակի վրա ստանում են օբյեկտիվ ճանգամանքի, իրողության նշանակություն, քանի որ նշված մակարդակների վրա ամեն մի անհատ մյուսի համար հանդես է գալիս և՛ որպես օբյեկտ, և՛ որպես սուբյեկտ, մեկի վարքը մյուսների համար դառնում է կյանքի հանգամանք, անհատական կեցություն։ Հենց այս իմաստով էլ պետք է ըմբռնվեն տատանվող անհատական կեցության հասարակայնորեն վնասակար հետևանքները։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔ Է

**Գ. Մ. ՄՈՒՂՆԵՑՅԱՆ**
ՀԿԿ Դիլիջանի քաղկոմի առաջին քարտուղար

*ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մշակեց մեր երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման տասներորդ հնգամյակի հիմնական խնդիրները, որոնց հաջող լուծումը մեծապես կնպաստի սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավմանը, առողջապահության, կուլտուրայի, կրթության զգալի առաջընթացին: Կուսակցության քաղաքական գործունեության բարդ համակարգում ուրույն տեղ ունեն նոր մարդու ձևավորման, անհատի համակողմանի զարգացման, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման հարցերը:*

*Կուսակցությունը, սովետական ժողովուրդն անում են հնարավոր ամեն ինչ, որպեսզի անթերի կատարվի համագումարի մշակած վիթխարի ծրագիրը, որակի ու արդյունավետության հնգամյակի մասշտաբային պլանները դառնան իրողություն: Համաժողովրդական այդ պայքարին ակտիվորեն մասնակցում են նաև Դիլիջան քաղաքի աշխատավորական կոլեկտիվներն ու սկզբնական կուսկազմակերպությունները: Քաղաքային կուսկազմակերպությունը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների և դրանց հաջորդած պլենումների որոշումներով, իր ամենօրյա գործունեությունը նպատակամղում է պետական պլանների կատարմանն ու գերակատարմանը, աշխատավորների քաղաքական դաստիարակությանը, նրանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարմանը՝ այդ խնդիրների վրա բևեռելով կոլեկտիվների, սկզբնական կուսկազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի ուշադրությունը:*

*Անտարակույս, այդ խնդիրների լուծման ասպարեզում վճռական դեր է հատկացվում կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդմանը, հանձնարարված գործի նկատմամբ մարդկանց պատասխանատվության բարձրացմանը: Կուսկազմակերպությունների քաղաքական-դաստիարակչական ողջ գործունեությունը, նրանց ջանքերն ուղղված են այն բանին, որ մարդիկ աշխատեն բարեխղճորեն, կադրերն իրենց վստահված տեղամասերը ղեկավարեն բանիմացորեն, որ քաղաքում չլինեն ետ մնացող ձեռնարկություն ու տնտեսություն, կոլեկտիվները պետական առաջադրանքները կատարեն բոլոր ցուցանիշներով:*



*Ելնելով մեր առաջադրանքների բարդությունից, ծառացած խնդիրների աննախադեպ մասշտաբներից, ինչպես նաև տնտեսական ու կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման մեթոդների և ոճի անընդհատ կատարելագործման անհրաժեշտությունից, քաղաքի կուսկազմակերպությունն անհրաժեշտ համարեց մշակել աշխատանքի կազմակերպման կոմպլեքսային միջոցառումների պլան, որի նպատակն է ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, բարձրացնել կուսկազմակերպությունների մարտունակությունը, զարգացնել նրանց նախաձեռնությունը, աշխատավորական կոլեկտիվներում ստեղծել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, որոշել յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի տեղն ու դերն ընդհանուր գործում:*

*Ներկա պահանջների ճշգրիտ հաշվառմամբ մշակված կոմպլեքսային այդ միջոցառումների հետևողական կենսագործման շնորհիվ քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների գործունեությունն այսօր դարձել է շատ ավելի ակտիվ ու նպատակասլաց: Այդ ամենի արդյունքը կոնկրետ գործերն են, հոբելյանական տարում ձեռք բերած բարձր ցուցանիշները: Մասնակցելով մեծ Հոկտեմբերի փառապանծ 60-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությանը, աշխատավորական Դիլիջանը պատվով կատարեց որակի և արդյունավետության հնգամյակի անցած երկու տարվա ժողովրդատնտեսական պլաններն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները:*

*Ամրապնդելով հնգամյակի նախորդ և մեկնարկային տարում ձեռք բերած նվաճումները, երբ քաղաքը երկու անգամ անընդմեջ արժանացավ հանրապետական փոխանցիկ դրոշների, արդյունաբերության աշխատողները բարձր ցուցանիշներով կատարեցին նաև հոբելյանական տարվա պետական առաջադրանքները: Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն մեծացան համախառն արտադրանքի թողարկման ու իրացման ծավալները: Բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը: Արդեն երրորդ տարին է՝ չունենք ետ մնացող ոչ մի ձեռնարկություն ու տնտեսություն:*

*Հետևողական աշխատանք է տարվում թողարկվող արտադրանքի որակական ցուցանիշների բարելավման համար: Բերենք միայն մեկ օրինակ. «Դիլիջան» հանքային ջուրը, որն իր քիմիական բաղադրությամբ ու բուժիչ հատկություններով չի զիջում «Բորժոմին» և լայն ճանաչում ստացած մյուս հանքային ջրերին, տասնամյակներ շարունակ արտադրվում էր պղտոր և ժանգանման նստվածքով: Բնականաբար, դա սպառողների մոտ թողնում էր տհաճ տպավորություն, և հաճախակի էին բողոքները: Գործին միջամտեցին ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպությունը, կուսքաղկոմը, որոնց հանձնարարականին համապատասխան՝ ձեռնարկությունում տեղադրվեցին նոր սարքավորումներ, կատարելագործվեցին տեխնոլոգիական պրոցեսները: Այդ ամենի շնորհիվ այսօր «Դիլիջան» հանքային ջուրն արտադրվում է բյուրեղյա մաքրությամբ, համային ու բուժիչ բարձր հատկություններով:*

*Մեքենայացման, ավտոմատացման ու տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման նպատակով ինտենսիվ աշխատանքներ են տարվում քաղաքի գրեթե բոլոր արտադրական ձեռնարկություններում: Լայն պայքար է ծակություններով չի զիջում «Բորժոմի» և լայն ճանաչում ստացած մյուս հանմար: Միայն անցած տարի 10 արտադրատեսակներ արժանացել են պետական որականիշի, որից 6-ը՝ «Իմպուլս» գործարանում:*

*Անվիճելի հաջողությունների են հասել նաև քաղաքի կառուցապատողներն ու բարեկարգողները: Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման նպատակով ձեռնարկված միջոցների շնորհիվ երրորդ տարին է, ինչ փակուղուց դուրս է բերվել կապիտալ շինարարությունը: Թեև շինմոնտաժային աշխատանքների ծավալը կրկնապատկվել, է, իսկ բարեկարգմանը՝ քառապատկվել, քաղաքի շինարարական կազմակերպությունները հաջողությամբ են կատարում իրենց առաջադրանքները: Վերջին երկու տարում շահագործման*

է հանձնվել այնքան բնակտարածություն, որքան նախորդ ողջ հնգամյակում։ Առավել խոսուն են բարեկարգման ցուցանիշները։ Եթե նախկինում այդ նպատակով տարեկան ծախսվում էր 250—300 հազար ռուբլի, ապա միայն 1976 թ. ծախսվեց մոտ մեկ միլիոն ռուբլի, իսկ անցած տարի, լրացուցիչ հատկացումների հետ միասին՝ ավելի քան երկու միլիոն ռուբլի։ Այդ մեծ միջոցները հնարավորություն ընձեռեցին վերջին երկու տարում ասֆալտապատել 300 հազար քառակուսի մետր հրապարակ, փողոց ու մայթ, կառուցել նոր մայրուղիներ ու ջրավազաններ, անցկացնել նոր ջրատարներ ու այլ կոմունիկացիաներ։

Կուսակցության ու կառավարության անդուլ հոգատարությամբ Դիլիջանն այսօր դարձել է շինարարական ընդարձակ հրապարակ։ Առողջարանային Դիլիջանի հետագա զարգացման ու բարեկարգման հարցը անցյալ տարի դարձավ միութենական կառավարության քննարկման առարկա։ Հաշվի առնելով քաղաքի ռելիեֆն ու տեղանքի առանձնահատկությունները, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մեծ միջոցներ է հատկացրել՝ բնական սողանքները կանխելու և այդ նպատակով մեծ ծավալի շինարարական-կառուցապատման աշխատանքներ կատարելու համար։ Հատկացված միջոցների նպատակային իրացման խիստ պատասխանատու գործում, հանրապետության կառավարության որոշմամբ, ներգրավվել են մի շարք նախագծային ու շինարարական կազմակերպություններ։ Դիլիջանի շինարարական կյանքում տեղի ունեցող մասշտաբային փոփոխությունները երախտագիտության մեծագույն զգացումով են համակում քաղաքի աշխատավորներին, և նրանք միասնական ջանքերով ձգտում են այդ հոգատարությանը պատասխանել նոր խիզախումներով, հայրենանվեր նոր գործերով։

Համընդհանուր արտադրական երթից ետ չեն մնում նաև քաղաքամերձ պետական տնտեսությունները։ Նրանք բոլոր ցուցանիշներով կատարեցին ու գերակատարեցին մթերքների արտադրության ու վաճառքի և գյուղատնտեսական կենդանիների գլխաքանակի ավելացման ոչ միայն պետական առաջադրանքները, այլև ստանձնած պարտավորությունները, նվաճեցին կաթի մթերման 1979 թ. բնագիծը։

Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում Դիլիջան քաղաքի աշխատավորների ձեռք բերած նվաճումներն ամենից առաջ արդյունք են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ու կառավարության ամենօրյա օգնության, որը հնարավորություն է ընձեռում Դիլիջանի կուսկազմակերպությանը՝ հաղթահարել շատ դժվարություններ, լուծել շատ պրոբլեմներ։

ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ և աշխատավորական կոլեկտիվներում կուսակցական ու պետական կարգապահությունն ամրապնդելու, քաղաքի առջև ծառացած բարդ ու պատասխանատու խնդիրները հաջողությամբ լուծելու գործում վճռական նշանակություն ունեցան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումի որոշումները։ Պլենումի պահանջների իրագործումը հնարավորություն ընձեռեց արմատապես բարելավելու քաղաքի կուսկազմակերպության գործունեությունը, կադրերի հետ տարվող աշխատանքը, բարձրացնելու հանձնարարված գործի նկատմամբ ղեկավարների ու մասնագետների պատասխանատվությունը, կուսկազմակերպություններում զարգացնելու աշխատանքի ստեղծագործական ոճը, նոր ուժով ծավալելու քննադատությունն ու ինքնաքննադատությունը, վճռական պայքար հայտարարելու բացասական երևույթների դեմ։

Կարգապահության ամրապնդումն ամենից առաջ ենթադրում է կադրերի հետ տարվող աշխատանքի արմատական բարելավում, կադրային ճիշտ քաղաքականության իրականացում, քաղաքականություն, որը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, այն հզոր լծակն է, որի միջոցով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Կադրերի հետ տարվող աշխատանքում քաղկոմը ձգտում է հասնել այն բանին, որ կուսկազմակերպությունների և կոլեկտիվների բոլոր կադրերի ու կոմունիստների գործունեու-



թյունը գնահատվի օբյեկտիվորեն, համակողմանի վերլուծվեն տեղ գտած թերությունները, թույլ չտրվի լիբերալ վերաբերմունք թերությունների ու դրանց համար մեղավորների նկատմամբ։

Գործի պատշաճ կազմակերպման և արդյունքների սկզբունքային ու ճիշտ գնահատման շնորհիվ անհամեմատ բարձրացել է սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մակարդակը, ղեկավար կադրերը, միջին և ստորին օղակների կազմակերպիչներն սկսել են հանդես բերել ավելի շատ ակտիվություն, աշխատավորական կոլեկտիվներում ծնունդ առած նախաձեռնությունները պաշտպանելու, ստեղծագործաբար զարգացնելու, լայնորեն տարածելու կարողություն։ Տարեցտարի աճում է այն սկզբնական կուսկազմակերպությունների թիվը, որոնք ստեղծագործաբար լուծում են իրենց կոլեկտիվների առջև դրված պատասխանատու խնդիրները, հմտորեն նպատակամղում նրանց գործունեությունը։ Այս առումով ուսանելի է «Իմպուլս» գործարանի, № 50 շինվարչության, Վ. Ի. Լենինի անվան սովխոզի, տրիկոտաժի ֆաբրիկայի, ռադիոտեխնիկումի, նորոգման-շինարարական վարչության և մի շարք այլ կուսկազմակերպությունների փորձը։ Նրանք հետևողականորեն զբաղվում են կադրերի ընտրության ու դաստիարակության, կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման հարցերով, դրանով իսկ նպաստում գործերի վիճակի բարելավմանը։ Ուշադրությամբ ու հոգատարությամբ շրջապատելով կադրերին, ամենօրյա օգնություն ցույց տալով ետ մնացողներին, կուսքաղկոմը միաժամանակ անզիջում է նրանց նկատմամբ, ովքեր չարաշահում են իրենց պաշտոնական դիրքը, ցուցաբերում անտնտեսվարություն, անտարբերություն արտադրության վերելքի, կոլեկտիվի հոգսերի հանդեպ։ Այդպիսի երևույթներ տեղ էին գտել Վ. Ի. Լենինի անվան և Գոշի պետական տնտեսություններում, ավտոտեխսպասարկման կայանում, տուրբազայում, բուժմիավորումում ու մի շարք այլ կազմակերպություններում։ Հիշյալ տնտեսություններում, օրինակ, տարիներ շարունակ թերակատարվում էին պետական առաջադրանքները և, ինչպես պարզվեց ավելի ուշ, կատարվել են խոշոր չափերի հասնող վատնումներ, շռայլումներ, յուրացումներ։ Անասունների տարեկան անկումներն ու հարկադիր մորթերը կազմում էին եղած գլխաքանակի գրեթե կեսը, վնասները հասնում էին հարյուր հազարավոր ռուբլիների։ Այս տնտեսություններում հետին պլանի վրա էին մղվել կուսակցական ու պետական կարգապահությունը, ստորին ու միջին օղակի կադրերի հետ տարվող աշխատանքը։

Քաղկոմի բյուրոն, քննարկելով ստեղծված վիճակը, զբաղեցրած պաշտոններից ազատեց և կուսակցական խիստ պատասխանատվության կանչեց այդ տնտեսությունների դիրեկտորներին։ Կուսակցությունից վտարվեցին և դատական պատասխանատվության կանչվեցին պետական ունեցվածքը հափշտակողներն ու վատնողները։ Ջախողված կադրերը փոխարինվեցին ձեռներեց, գործիմաց և ազնիվ մարդկանցով, որոնք կարճ ժամանակամիջոցում շտկեցին դրությունը և բարելավեցին գործերի վիճակը։ Այժմ Գոշի և Լենինի անվան պետական տնտեսությունները, որոնց դիրեկտորներն են հմուտ կազմակերպիչներ Գ. Արզումանյանը և Հ. Թումանյանը, դուրս են եկել վերելքի ուղի, կատարում ու գերակատարում են ոչ միայն պետական առաջադրանքները, այլև ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Գործի շահերից ելնելով՝ քաղկոմը կազմակերպական միջոցների դիմեց նաև մի շարք այլ հիմնարկ-ձեռնարկություններում։ Կուսակցական ու պետական կարգապահությունը կոպիտ կերպով խախտելու, իրենց անմիջական պարտականությունները չկատարելու, կոլեկտիվներին պահանջվող մակարդակով չղեկավարելու, պետական առաջադրանքների կատարումը ձախողելու համար պաշտոններից հանվեցին ավտոտեխսպասարկման կայանի, հացի գործարանի, տուրբազայի, բուժմիավորման, կինոցանցի դրասենյակի ղեկավարները, որոնց

մի մասը միաժամանակ ենթարկվեց կուսակցական խիստ պատասխանատվության: Այդ տեղամասերն ուղարկվեցին կուսակցական ու տնտեսական աշխատանքի հարուստ փորձ ունեցող, իրենց գործը սիրող, եռանդուն կադրեր: Այժմ այդ կազմակերպությունների մեծ մասում գործերի վիճակն արմատապես բարելավվել է:

Բոլոր օղակներում կուսակցական կարգապահության ամրապնդման գործում քաղկոմը մշտապես հենվում է կոմունիստների կոլեկտիվ կամքի վրա, ուշի-ուշով հաշվի առնում նրանց կարծիքն ու փորձը, ընդհանրացնում կոմունիստների կողմից արված դիտողություններն ու առաջարկությունները, տալիս կոնկրետ հանձնարարություններ, վերահսկում կատարման ընթացքը:

Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդմանը մեծապես նպաստում են կուսակցության քաղաքային կոմիտեում անցկացվող օպերատիվ խորհրդակցությունները, որտեղ հանգամանալի վերլուծվում ու քննարկվում է գործերի իրական վիճակը, որոնց հետևում է կոնկրետ աշխատանքն արտադրական ձեռնարկություններում, շինարարական հրապարակներում, գյուղատնտեսական արտադրության և այլ տեղամասերում:

Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման, կազմակերպական աշխատանքի արդյունավետության բարձրացման փորձված մեթոդ է քաղկոմի բյուրոյի նիստերում և պլենումներում սկզբնական կուսկազմակերպությունների, նրանց քարտուղարների և առանձին կոմունիստների հաշվետվությունները պարբերաբար քննարկելը: Այս առումով կարելի է բերել թերևս մի օրինակ: Վերջերս լսելով նորոգման-շինարարական վարչության սկզբնական կուսկազմակերպության անդամ, կոմունիստ մեխանիզատոր Ֆեոդոր Զայչուկի հաշվետվությունը, քաղկոմի բյուրոն նշեց, որ նա բարեխղճորեն է կատարում կոմունիստի իր պարտականություններն ու սոցպարտավորությունները: Տասներորդ հնգամյակի հարվածային է, պարգևատրվել է Աշխատանքային փառքի III աստիճանի շքանշանով: Նա միաժամանակ հասարակական ակտիվ աշխատող է, կուսկազմակերպության բյուրոյի անդամ, քաղաքային սովետի դեպուտատ, այժմ ղեկավարում է քաղաքային սովետի կոմունալ-կենցաղային մշտական հանձնաժողովը, ակտիվորեն է մասնակցում քաղաքի կուսակցական և հասարակական կյանքին: Ի դեպ, մեր նպատակն էր ընդհանրացնել ոչ թե Ֆ. Զայչուկի արտադրական փորձը, այլ հանգամանորեն ցույց տալ, թե այդ առաջավոր բանվորն ինչպես է կարողանում զուգակցել արտադրական ու հասարակական գործունեությունը:

Ընդունված որոշմամբ քաղկոմի բյուրոն հանձնարարեց սկզբնական կուսկազմակերպություններին՝ կոլեկտիվներում մասսայականացնել կոմունիստ Ֆ. Զայչուկի առաջավոր փորձը, լուրջ ուշադրություն նվիրել կոմունիստների, արտադրության կազմակերպիչների հետ տարվող անհատական աշխատանքին, նրանց կողմից ՍՄԿԿ կանոնադրական պահանջների անթերի կատարմանը, լայնորեն խթանել ստորին օղակներում ծնվող նախաձեռնությունները:

Կուսակցական կարգապահությունն ամրապնդելու, ներկուսակցական դեմոկրատիան ըստ ամենայնի զարգացնելու նպատակով քաղաքային կոմիտեն կուսակցական գործերի ղեկավարման մեջ ավելի ու ավելի լայնորեն է ներգրավում կոմունիստներին, հնարավոր միջոցներով օգնում ապահովելու նրանց գործարար մասնակցությունը հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը, աշխատավորական կոլեկտիվներում կուսակցական որոշումների պարզաբանմանը: Որպես կանոն, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը մասնակցում են քաղկոմի քարտուղարները, բյուրոյի անդամները, ակտիվիստները, ընդ որում, ոչ թե որպես «վերստուգողներ», այլ խորհրդատուներ՝ կուսակցական մեթոդներով ավելի արդյունավետ լուծելու ընթացիկ ու հեռանկարային հարցերը: Նման պրակտիկան օգնում է կուսկազմակերպությունների գործունեության բարելավմանը, կուսակցական ժողովների դերի բարձրացմանը:



Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման վճռական գործոն է մարդկանց հավատը, նրանց վստահությունը վերադաս մարմինների գործունեության նկատմամբ: Քաղկոմն ըստ ամենայնի կարևորում է այդ գործոնի դերը մարդկանց դաստիարակության ասպարեզում: Մենք ակտիվի միջոցով մանրակրկիտ հաշվի ենք առնում կուսակցական ժողովներում կոմունիստների արած դիտողություններն ու առաջարկությունները, հետևում, որ ոչ մի էական դիտողություն կամ առաջարկություն չմնա թղթի վրա: Դիտողություններին և առաջարկություններին ընթացք տալու նպատակով ձեռնարկված միջոցների, ինչպես նաև քաղաքի կուսակցական կյանքի նորությունների մասին սիստեմատիկաբար ինֆորմացիա է տրվում կոմունիստներին:

Կուսակցական կարգապահության ամրապնդման անփոխարինելի միջոց են առողջ ու գործարար քննադատությունը և ինքնաքննադատությունը: Դիլիջանի կուսկազմակերպությունը ղեկավարվում է լենինյան այն հիմնարար դրույթով, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունն աշխատանքի բարելավման ներգործուն միջոց են, սխալներն ուղղելու փորձված մեթոդ, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով կադրերի դաստիարակության դպրոց: Փորձը ցույց է տվել, որ սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության զարգացումն աշխատավորական կոլեկտիվներում տիրող բարոյահոգեբանական լավ մթնոլորտի, կուսակցական կազմակերպության մարտունակության գրավականն է:

Ամրապնդել կուսակցական ու պետական կարգապահությունը, այդ նշանակում է հոգալ կուսակցության շարքերի միասնության, կոմունիստների կազմակերպվածության բարձրացման մասին: Քաղկոմը մշտապես իր տեսադաշտում է պահում կուսշարքերի աճի և նրա որակական կազմի բարելավման հարցը, ընդսմին, առաջնորդվելով կուսակցության XXV համագումարի այն ցուցումով, թե «...ՍՄԿԿ-ն չի արագացնում իր թվական աճը, նա իր շարքերն է ընդունում միայն նրանց, ովքեր գործով ապացուցել են, որ կուսակցության մեջ են մտնում, լենինյան բառերով ասած, ոչ թե որևէ շահ ստանալու համար, այլ հանուն անձնվեր աշխատանքի, հօգուտ կոմունիզմի» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 94—95):

Վերջին երկու տարում կուսակցության շարքերն ընդունվածների 66 տոկոսը բանվորներ են, մարդիկ, որոնք լավ օրինակ են ցույց տալիս աշխատանքում, հասարակական և անձնական կյանքում: ՍՄԿԿ շարքերը համալրելիս քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ղեկավարվում են ՍՄԿԿ Կենտկոմի «Կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» որոշման պահանջներով և Լ. Ի. Բրեժնևի այն հայտնի դրույթով, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ ՍՄԿԿ-ն դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը, այն ամենևին չի կորցնում իր դասակարգային բնույթը, որ այն եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը:

Քաղկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության առանցքը դարձել է մասսաների հետ կապի ամենօրյա ամրապնդումը, որը կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահության բարձրացման կարևոր միջոց է և մարդկանց ակտիվության բարձրացման անսպառ աղբյուր: Կուսկազմակերպությունները, ակտիվը մշտապես խորհրդակցում են աշխատավորների հետ, հաշվի առնում նրանց կամքն ու շահերը, հենվում նրանց փորձի վրա: Այդ ամենն օգնում է ավելի արագորեն վերացնելու թերությունները և օպերատիվ կերպով լուծելու առաջադրված խնդիրները:

Այդուհանդերձ, պետք է խոստովանել, որ մեր կուսկազմակերպությանը դեռևս չի հաջողվել լիովին վերացնել թերություններն ու բացթողումները, բոլոր օղակներում պահանջվող մակարդակի հասցնել կուսակցական, պետա-

կան և աշխատանքային կարգապահությունը, ամենուրեք հաստատել ղեկավարման իսկական կուսակցական ոճ: Որոշ կազմակերպություններում դեռևս դանդաղ են արմատավորվում աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդները, լրիվ արդյունավետությամբ չեն օգտագործվում արտադրական կարողությունները, առանձին օղակներում անբավարար են կիրառվում գիտության ու տեխնիկայի նվաճումները, խսպառ չեն բացառված ցածրորակ աշխատանքի ու արտադրական խոտանի դեպքերը: Օրինակ, № 2986 ավտոշարասյունում, թեև օպերատիվ միջամտությունից հետո դրական տեղաշարժեր կատարվել են, սակայն դեռևս լրիվ բեռնվածությամբ չի շահագործվում մեքենայական պարկը, անբավարար է ուղևորների սպասարկման կուլտուրան, առանձին վարորդների մոտ ցածր է աշխատանքային կարգապահությունը:

Էական թերություններով է աշխատում քաղառը: Այստեղ վատ է ուսումնասիրվում գնորդների պահանջարկը, ցածր է նրանց սպասարկման կուլտուրան, խանութների մի մասը տեղավորված է անհրապույր շենքերում, մեծ դժվարությամբ են կատարվում ապրանքաշրջանառության պլանները, հաճախակի են թերաչափումների ու թերակշռումների փաստերը, դանդաղ են արմատավորվում առևտրի առաջավոր մեթոդները:

Հացի գործարանում նեղ է թողարկվող արտադրանքի տեսականին, արտադրանքի որակը հաճախ չի համապատասխանում պետական ստանդարտին: Մատակարարման գործում նկատվում են խափանումներ, չեն կատարելագործվում տեխնոլոգիական պրոցեսները:

Թեև վերջին երկու տարում արմատական շրջադարձ է կատարվել քաղաքի շինարարական կազմակերպությունների կյանքում, և ակնհայտ է լուրջ առաջընթացը, սակայն շինմոնտաժային աշխատանքների որակը չի համապատասխանում ժամանակակից պահանջների մակարդակին:

Կուսակցության քաղկոմը սկզբնական կուսակցական կազմակերպությունների, համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների հետ մանրակրկիտ ուսումնասիրել և գործնական միջոցառումներ է մշակել նշված հիմնարկ-ձեռնարկություններում վիճակը լիովին բարելավելու համար: Թերությունները շտկելու նպատակով սահմանել ենք կոնկրետ ժամկետներ, յուրաքանչյուր կազմակերպության ամրացրել քաղկոմի պատասխանատու աշխատողներ՝ տեղերում օպերատիվ կերպով լուծելու ծագող հարցերը:

Առաջիկայում քաղաքի գրեթե բոլոր թաղամասերում կկառուցվեն և կգործարկվեն առևտրի նոր ու բարեկարգ օբյեկտներ: Վերջերս շահագործման հանձնվեց հանրախանութի քառահարկ շենքը: Երիտասարդ կադրերի մի ստվար ջոկատ է պատրաստվում առևտրի ցանցում աշխատելու: Առևտրական օբյեկտներում տեղադրվում են ժամանակակից սարքավորումներ, կարգավորվում է սառնարանային տնտեսությունը:

Շինարարությունը մեր քաղաքի համար ունի կենսական նշանակություն, և մենք հսկայական ջանքեր ենք գործադրում շինմոնտաժային աշխատանքների որակն ըստ ամենայնի բարելավելու, կառույցների գործարկման ժամկետները կրճատելու, շինարարության առաջավոր մեթոդները արմատավորելու համար:

Կուսակցության քաղկոմը, ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի գործկոմը, հասարակական ու վարչական կազմակերպությունների հետ համատեղ, պայքարում են Դիլիջանը դարձնելու կոմունիստական կենցաղավարության, օրինակելի կարգ ու կանոնի քաղաք:

Կոմունիստական կուսակցությունը մեր կադրերին հետևողականորեն սովորեցնում է տիրապետել աշխատանքի լենինյան ոճին, որի բնորոշ գծերից են կոնկրետությունն ու գործարարությունը: ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց, որ ներկա պայմաններում հատկապես կարևոր է, որպեսզի կուսկազմակերպությունների քաղաքական, կազմակերպական, գաղափարական ողջ գործունեությունն ակտիվորեն ծառայի և օգնի տնտեսական խնդիրների լուծմանը, կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում ռեզերվների մոբիլիզացմանն ու օգտագործմանը:

Դիլիջանի կուսակցական կազմակերպությունը կոմունիստների ու բոլոր աշխատավորների ջանքերը նպատակամղել է տասներորդ հնգամյակի վիթխարի պլանների անշեղ իրականացմանը:

Այսօր մեր մարդկանց համար ոգեշնչման աղբյուր է կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, Սովետական Միության աշխատավորներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը՝ «1978 թվականի պլանի կատարման ու գերակատարման համար մրցություն ծավալելու և արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար պայքարն ուժեղացնելու մասին»: Ամենուրեք՝ արտադրական կոլեկտիվները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները ջերմորեն հավանություն տվեցին այդ նամակին և ստանձնեցին բարձր պարտավորություններ, խոստացան ամրապնդել աշխատանքային, պետական և կուսակցական կարգապահությունը, մոբիլիզացնել բոլոր ուժերը, հնարավորություններն ու ռեզերվները՝ 1978 թվականը արդյունավետության և որակի տարի դարձնելու համար: Մեզ համար, մյուս պահանջների հետ միասին, գործողության ուղեցույց կդառնա նամակում առաջադրված հետևյալ խնդիրը. «Արտադրության արդյունավետության բարձրացման, 1978 թվականի պլանի հաջող կատարման կարևորագույն պայմանը մեր աշխատանքի բոլոր տեղամասերում կազմակերպվածությունն ու կարգապահությունն է: Խոսքը վերաբերում է աշխատանքային կարգապահությանը, տեխնոլոգիական կարգապահությանը, պլանային կարգապահությանը»: Մեր խնդիրն է մշտապես հիշել, որ կարգապահությունը հաջողության երաշխիքն է և հարկ է այն ամրապնդել բոլոր օղակներում:

# ՊԱՅՔԱՐԻ ՆՊԱՏԱԿԸ ԲԱՐՁՐ ՈՐԱԿՆ Է

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

## ՈԳԵՇՆՉՄԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

*Երևանի էլեկտրաապարատների գործարանը թողարկում է վերելակային ղեկավարման կայաններ ու վահաններ, միջանկյալ ռելեներ, որոնք հույժ անհրաժեշտ են շինարարության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության համար։ Ընդ որում, վերելակային վահանների միակ արտադրողը Սովետական Միությունում այս գործարանն է։ Այստեղից էլ՝ ձեռնարկության ժողովրդատնտեսական բացառիկ կարևորությունը։*

*Բեռնատար ու մարդատար վերելակների կարիքն այնքա՜ն շատ է զգացվում խոշոր կառույցներում, արդյունաբերական, վարչական ու բնակարանային շինարարության մեջ։ Աննշան հապաղում, առաջադրանքների թեկուզ և չնչին թերակատարում, և վերելակաշինական ձեռնարկությունները կձախողեն վերելակների կոմպլեկտավորումը, շինարարական կազմակերպությունները կձգձգեն դրանց տեղադրումը, հետևապես և՝ կառուցված, ավարտված շենքերի գործարկումը։*

*Երևանյան մակնիշով էլեկտրաապարատները լայնորեն կիրառվում են տեխնիկապես զարգացած այնպիսի երկրներում, ինչպես ԳԴՀ-ն, ՉՍՍՀ-ն, ԱՄՆ-ը, Անգլիան, Ճապոնիան, Ֆրանսիան, Շվեդիան, Իտալիան, Կանադան և այլն։*

*Արտադրանքի ժողովրդատնտեսական կարևորությունը, լայն պահանջարկը պատասխանատվության խոր զգացումով են համակել էլեկտրաապարատների կոլեկտիվին։ Գործարանը բարձր ցուցանիշներով կատարում է արտադրանքի թողարկման ու իրացման պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, սպառողներից բողոքներ չի ստանում և, ամենակարևորը, որակի պետական նշանով արտադրանքի թողարկման ծավալը հասցրել է 83 տոկոսի՝ 15 տոկոսով գերազանցելով 1977-ի սոցիալիստական պարտավորությունը։ Ի դեպ, դա ամենաբարձր ցուցանիշն է մայրաքաղաքի «Ա» խմբի ձեռնարկությունների միջև։ Հատկանշական է, որ եթե 1973-ին պետական որականիշ ուներ ընդամենը մեկ արտադրատեսակ, ապա այժմ դրանց թիվը հասել է 24-ի։*

*Անցած տարի գործարանը, սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու և բարձրորակ արտադրանք թողարկելու համար, երեք եռամսյակ արժանացել է ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի երրորդ մրցանակին, նվաճել ՀԿԿ Լենինյան շրջկոմի և շրջսովետի գործկոմի՝ արտադրանքի բարձր որակի համար սահմանված փոխանցիկ դրոշը։*

*— Մասնավորապես վերելակային կառավարման վահանների տեխնիկական ցուցանիշներով,— ասում է գործարանի գլխավոր ինժեների տեղակալ Գ. Սահակյանը,— մենք հասել ենք արդյունաբերական զարգացած երկրների ֆիրմաների համանման արտադրանքի տեխնիկական մակարդակին, իսկ առանձին պարամետրերով՝ նույնիսկ գերազանցել։*



*Որո՞նք են գործարանում արտադրանքի որակի բարելավման գաղտնիքները։ Արտադրության հրամանատարների ու մասնագետների համոզմամբ, դրանցից մեկը սոցիալիստական մրցության խելամիտ կազմակերպումն է։ Այդ համաժողովրդական շարժումն էլեկտրաապարատավարների համար դարձել է ոգեշնչման աղբյուր, նրանց ուժերի համակողմանի մոբիլիզացման ու պատասխանատվության բարձրացման վճռական գործոն։ Մրցությունը բազմապատկում է նրա մասնակիցների եռանդը, նրանց մղում աշխատանքային խիզախումների։*

*Հատկապես վերջին տարիներին սոցիալիստական մրցությունն այս առաջավոր ձեռնարկությունում նոր որակ է ստացել, ընդլայնվել է ընդգրկման ոլորտը։ Սոցիալիստական մրցության պայմանագրերում որոշակի տեղ է հատկացվում որակական ցուցանիշներին։ Ծանոթանում եմ կոլեկտիվ ու անհատական սոցիալիստական պարտավորություններին և համոզվում, որ այստեղ մրցության գլխավոր նպատակներից մեկն արտադրանքի որակի բարձրացումն է, դրա հուսալիության ու երկարակեցության ապահովումը։*

*Այդ պայմանագրերում նախատեսվում են այնպիսի ցուցանիշներ, որոնք ուղղակի կամ անուղղակի նպաստում են արտադրանքի որակի բարձրացմանը։ Դրանք ներառում են նոր ստանդարտների մշակումը, առաջին ներկայացմամբ արտադրանքի հանձնումը, արտադրատեսակները որակի պետական նշանի ներկայացնելը, անձնական դրոշմով աշխատելու իրավունքի ձեռքբերումը, տեխնոլոգիական կարգապահության ամրապնդումը, համաչափ աշխատանքի ապահովումը, բանվորների որակավորման բարձրացումը, նրանց կողմից լրացուցիչ մասնագիտությունների տիրապետումը և այլն։ Եվ ամեն մի փոքր ու մեծ ստորաբաժանման կոլեկտիվ, ամեն մի մասնագիտության բանվոր ստանձնում է իր աշխատանքի բնույթից ու պայմաններից բխող պարտավորություններ, որոնք արտացոլում են բարձր արդյունավետության ու որակի խնդիրները։*

*Սոցիալիստական մրցության տոն տվողը, արտադրանքի որակի բարձրացման համար մրցողների պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողը գործարանի կուսկազմակերպությունն է (կուսբյուրոյի քարտուղար՝ Ռ. Հակոբյան), նրա ստորին օղակները։ Մրցությունը կազմակերպելիս կուսկազմակերպությունը և նրա բյուրոն ելնում են այն իրողությունից, որ որակի պրոբլեմն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը։*

## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՎ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*Արտադրանքի որակի բարձրացման գործոնների, այդ նպատակով ծավալված պայքարի ողջ համակարգում գործարանի կուսկազմակերպությունը և նրա բյուրոն հույժ կարևորում են սոցիալիստական մրցության անընդհատ կատարելագործման անհրաժեշտությունը։ Արտադրանքի որակի բարելավմանը խթանող արդյունավետ ձև է «մասնագիտության մեջ լավագույնը» մրցույթը։ Այն լայն կիրառություն ստացավ հատկապես ընթացիկ հնգամյակում։ Մրցույթն անցկացվում է տարեկան մեկ անգամ։ Դրա նպատակն է հայտնաբերել լավագույն աշխատողին։ Մրցույթի պայմաններով նախատեսված է, հաղթողին որոշելու համար, հաշվի առնել ո՛չ միայն ժամանակի գործոնը, այլև յուրաքանչյուր գործողության ու ամբողջական արտադրանքի որակը, մրցույթի մասնակիցների տեխնիկական ու քաղաքական պատրաստականությունը։ Մինչև մրցույթի անցկացումը գործարանում հայտարարվում է նախապատրաստական ժամանակաշրջան, կուսբյուրոն մշակում է հատուկ հարցեր և առաջադրում մրցույթի բոլոր մասնակիցներին։*

*Կուսբյուրոն ու արտադրամասային կուսկազմակերպությունները ձգտում են, որպեսզի այդ մրցույթին մասնակցեն անխտիր բոլոր բանվորներն ու վարպետները, դրսևորեն իրենց ունակությունները։ Անցած տարի մրցույթի հաղթողներ դարձան խառատ Գուրգեն Բաղալյանը, ֆրեզերագործ Էդիկ Փափազյանը, փականագործ Բաբգեն Սողչյանը, էլեկտրակարգավորող Ալբերտ Ջանվելյանը, փաթաթող Ջալլի Ախմեդովան և վարպետ Վալերի Նազարյանը։*

*Սոցիալիստական մրցությունն ստեղծարար բնույթ ունի։ Այն ո՛չ միայն*

*բանին, դրանց տեխնոլոգիան լավ մշակված չէր, գծագրերում կային որոշ թերություններ։ Նոր էին և մարդիկ. հարկ էր լինում և՛ սովորեցնել նրանց, և՛ արտադրանք տալ։ Գործարանի դիրեկտորը՝ ընկեր Մարկոսյանը, լինում էր տեղամասերում, հետևում, օգնում էր։ Լավ էին օժանդակում նաև կենտրոնական լաբորատորիայի ինժեներներ Պետրոս Նահապետյանը, Մինաս Հայրապետյանը և ուրիշներ, կուսբյուրոն անդրադառնում էր այդ գործին։ Սակայն մենք գոհ չէինք յուրացվող կայանների որակից։ Մի օր էլ դիրեկտորը կանչեց ու ասաց՝ պիտի գլուխ հանենք գործից, խորհուրդ տվեց հատկապես ուշադրություն դարձնել կայանների ընդհանուր կարգավորմանը, որով և պայմանավորված է բարձր որակը։*

*Մի քանի ամիս լավ աշխատեցինք, ջանք ու եռանդ չխնայեցինք, արդյունքը եղավ այն, որ այդ ապարատներին շնորհվեց պետական որականիշ։*

*Եվ այսպես, արտադրանքի որակի բարելավման համար ստեղծվեցին լավ նախադրյալներ։*

*— Ձեռք բերածն ամրապնդելու նպատակով,— ասում է կուսբյուրոյի քարտուղար Ռ. Հակոբյանը,— կուսկազմակերպությունն ու նրա բյուրոն հիմնական խնդիրը համարեցին բարձրացնել բանվորների մասնագիտական որակավորումը, գաղափարաքաղաքական աշխատանքի ծավալմամբ հասնել այն բանին, որ յուրաքանչյուր բանվոր, յուրաքանչյուր կոլեկտիվ ստանձնի որակի բարելավման բարձր պարտավորություններ։*

*Տասներորդ հնգամյակի անցած երկու տարիներին գործարանային ու արտադրամասային կուսկազմակերպությունները քանիցս անդրադարձել են որակի բարելավմանն առնչվող հարցերին, իրենց ավանդը ներդրել արդյունավետության ու որակի հնգամյակի խնդիրների իրականացման գործում։ Այս առումով հատկանշական է հավաքման № 1 արտադրամասի կուսկազմակերպության (կուսբյուրոյի քարտուղար՝ Դ. Սայան) գործունեությունը։ Ինչպիսի հարց էլ քննարկվելիս լինի արտադրամասի կուսակցական ժողովում և բյուրոյի նիստում, անպայմանորեն շոշափվում է և որակի հարցը, դրա վրա սևեռվում կոմունիստների ու կոլեկտիվի անդամների ուշադրությունը։*

*Անցած տարի արտադրամասի կուսկազմակերպության ուսումնասիրությունից պարզվեց, որ տեղամասերում գործիքների ու չափիչ սարքերի մի զգալի մասը մաշվել է, երբեմն խափանվում է դեֆիցիտ դետալների մատակարարումը։ Հունիսին տեղի ունեցած կուսակցական ժողովի հանձնարարությամբ տեխնոլոգիական բյուրոյի պետ Սեդրակ Մարտիրոսյանն ու արտադրամասի պետի տեղակալ Արմեն Ներսիսյանը քսան օրվա ընթացքում կազմեցին բոլոր տեղամասերում հնացած գործիքների ցուցակը, դրանց նորոգման գրաֆիկը, փոխեցին բանվորների մոտ եղած բոլոր հնացած գործիքներն ու չափիչ սարքերը։ Ժողովից հետո արտադրամասի տեխնիկական վերահսկողության բյուրոյին առընթեր ստեղծվեց որակի հանձնաժողով, որն ամեն շաբաթ պարզում է ստացված դետալների ու սարքերի, ինչպես նաև պատրաստի արտադրանքի որակական վիճակը։ Հանձնաժողովի անդամ, ՍՄԿԿ անդամության թեկնածու Նազելի Պերիկյանն ասում է.*

*— Հաշվառման մատյանում գրանցում ենք, թե տվյալ շաբաթվա ընթացքում տեխնիկական վերահսկողության բաժին հանձնած արտադրանքն առաջին ներկայացումից ինչպիսի որակ է ունեցել։ Դա նպաստում է դեֆեկտների վերացմանը, որակի էական բարձրացմանը։ Միջին հաշվով արտադրանքի 96—97 տոկոսը հանձնվում է առաջին ներկայացմամբ։ 1977 թվականին բողոք չենք ստացել։*

*Շրջում եմ հավաքման № 1 արտադրամասում և համոզվում, որ այստեղ հետևողական պայքար է ծավալվել վերելակային բարձրորակ ապարատներ թողարկելու համար։ Ամենուրեք մոբիլիզացնող կոչեր են, տեղամասերի ու բրիգադների աշխատատեղերում ցուցադրված են սոցիալիստական պարտավորությունները, դրանց կատարման արդյունքները։ Այն հավասարապես վերաբերում է նաև որակի խնդրին։ Գեղեցիկ ձևավորված ցուցադրական վահանակներից կարող ես իմանալ, թե անցած ամսում որքան է եղել որակի գործակիցը, արտասահման առաքված արտադրանքի ծավալը, աշխատանքի համաչափության աստիճանը, առաջին ներկայացմամբ հանձնած և որակի պետական նշանով թողարկված արտադրանքի քանակը՝ տոկոսային արտահայտությամբ, ինչպիսի տեխնոլոգիական խախտումներ են եղել, բողոքներ ստացվել, քանի մարդ է աշխատում անձնական դրոշմով, ովքեր են որակի համար ծավալված մրցության առաջավորները, ովքեր՝ խոտանարարները։ Ի պատիվ արտադրամասի կոլեկտիվի, բացասական ցուցանիշներն արտացոլող սյունակները հիմնականում դատարկ են։ Ասել է, թե տեխնոլոգիական խախտումներ, խոտանի դեպքեր ու խոտանարարներ չեն եղել։ Այժմ այս կոլեկտիվը 11 արտադրատեսակ թողարկում է որակի պետական նշանով։*

## ԽՈՏԱՆԸ ԿԱՆԽԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ գործարանի կոլեկտիվն ամեն տարի ստանձնում է արտադրանքի որակական ցուցանիշների լավացման վերաբերյալ բարձր պարտավորություններ։ Այդ պարտավորությունների անվերապահ կատարման համար, սակայն, քննարկումներն ու միջոցառումների մշակումը, մարդկանց խանդավառությունը բավական չեն։ Անհրաժեշտ է մշտական հսկողություն սահմանել որակի նկատմամբ, հետևողական պայքար ծավալել խոտանի ու խոտանարարների դեմ, ներդաշնակել ու միավորել կուսկազմակերպության ու դիրեկցիայի ջանքերը։ Այս հանգամանքը ճիշտ են ըմբռնել գործարանի կուսբյուրոն ու տնտեսական ղեկավարությունը՝ սահմանելով հսկողություն «որակի օր» միջոցառման անցկացման նկատմամբ։ Յուրաքանչյուր շաբաթվա չորեքշաբթի օրը՝ արտադրամասերում, իսկ հինգշաբթի օրը՝ գործարանի մասշտաբով քննարկվում է որակի հարցը։ Մասնակցում են այդ գործին առնչվող բոլոր աշխատողները, կուսակցական, կոմերիտական ու արհմիութենական ակտիվիստները։ Հանգամանալից ուսումնասիրության միջոցով հնարավոր է լինում պարզել, թե անցած «որակի օր» միջոցառման ժամանակ տրված հանձնարարություններն ինչպես են կատարվել, բացահայտել յուրաքանչյուր արտադրամասում, տեղամասում ու բրիգադում տեղ գտած թերություններն ու խախտումները, նշել դրանց վերացման ու կանխման, արտադրանքի որակի բարձրացման գործնական ուղիներ ու միջոցներ։ Այդ միջոցառման անցկացումն զգաստացնում է մարդկանց, փակում խոտանի ճանապարհը։*

*Որակի բարձրացման գործին էական աջակցություն է ցույց տալիս կուսբյուրոյին առընթեր գործող որակը վերահսկող հանձնաժողովը։ Հանձնաժողովի կազմում ընդգրկված առաջավոր բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները պարբերաբար ուսումնասիրում են արտադրանքի որակի վիճակը բոլոր ստորաբաժանումներում, քննարկում որակին առնչվող բոլոր հարցերը։*

*Ուսումնասիրություններից մեկի ժամանակ հանձնաժողովը պարզեց, որ միջանկյալ ռելեի դետալներից մեկը՝ միջուկը, խոտան է, որի պատճառով ամբողջ արտադրանքը ցածրորակ է։ Այդ առթիվ հանձնարարություններ տրվեցին գլխավոր մասնագետներին, որոնք շուտով կարգավորեցին այդ գործը։*

*Հանձնաժողովն ուսումնասիրել է նաև հեղինակային հսկողության վիճակը, խոտանից առաջացած կորուստների պատճառները, տեխնիկական կարգապահության խախտման դեպքերը և այլն։ Այլ խոսքով, որակը վերահսկող հանձնաժողովը դարձել է այդ բնագավառում կուսկազմակերպության ակտիվ օգնականն ու սուր աչքը բոլոր աշխատամասերում։*

*Կուսկազմակերպությունն արտադրանքի որակի նկատմամբ հսկողությունն իրականացնում է նաև ժողովրդական վերահսկողության գործարանային խմբի միջոցով։ Կուսբյուրոյի հանձնարարությամբ վերջինս ուսումնասիրել և իր նիստում քննարկել է տեխնոլոգիական կարգապահության վիճակը ներկման արտադրամասում։ Պարզվել էր, որ այստեղ տեխնոլոգիական յոթ պրոցեսի փոխարեն կատարվում է չորսը, իսկ դա նշանակում է որակի զգալի անկում։*

*Ծանոթանալով վերահսկողության խմբի ուսումնասիրության ու քննարկ-*

ման արդյունքներին՝ կուսբյուրոն հրավիրեց հատուկ խորհրդակցություն, որին մասնակից դարձրեց ներկման արտադրամասի ղեկավարներին, մասնագետներին ու բանվորներին, ձեռնարկության՝ այդ գործին առնչվող մասնագետներին։ Գործարար խոսակցություն եղավ այդ հարցի շուրջ։ Քննարկումը ցույց տվեց, որ ապարատների գեղագիտական մակարդակի բարձրացման նպատակով պետք է մեքենայացնել ներկման պրոցեսը։ Կարճ ժամանակամիջոցում տեխնոլոգիական բյուրոյի մասնագետների մշակած նախագծով շահագործման հանձնվեց ներկման հոսքային գիծը։ Հոսքային գծի նախագծման ու պատրաստման գործում ներդրած ավանդի համար այժմ էլ շնորհակալությամբ են արտահայտվում գլխավոր ինժեներ Գ. Իսաբեկյանի, բյուրոների պետեր Էդ. Ավագյանի, Ռ. Զոփուրյանի և ուրիշների մասին։

Կազմակերպական բնույթի զանազան միջոցառումներով կուսկազմակերպությունը նպաստում է արտադրանքի որակի բարձրացմանը, օգնում մրցության մասնակիցներին՝ կատարելու այդ առթիվ իրենց ստանձնած սոցպարտավորությունները։ Այդ առումով շատ օգտակար է նաև մրցության արդյունքների ամփոփման ժամանակ որակական գործոնների ու մրցողների բարոյական ու նյութական խրախուսման կարևորումը, դրանց ճիշտ զուգորդումը։ Մրցության արդյունքներն ամփոփելիս չեն անտեսվում որակին առնչվող և ոչ մի խախտում ու թերացում։ Մրցության պայմաններով սահմանվել է որակի կայուն գործակից արտադրանք տվող բոլոր ստորաբաժանումների համար։ Եթե, օրինակ, արտադրամասի որակի գործակիցը 0,80-ից չի անցնում, ապա կոլեկտիվը դուրս է մնում մրցությունից. ժյուրին նրա արդյունքները քննարկման չի դնում։ Անցած տարվա սեպտեմբերին ու հոկտեմբերին հավաքման № 2, նոյեմբերին՝ գործիքաշինական № 7 և մեխանիկական № 10 արտադրամասերը զրկվեցին սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփմանը մասնակցելու իրավունքից՝ ցածր գործակցի պատճառով։

Կամ մեկ ուրիշ օրինակ։ Եթե «մասնագիտության մեջ լավագույնը» մրցույթի ընթացքում պարզվում է, որ մեկնումեկը թերի, ցածրորակ է կատարում իր գործը, չի ապահովում արտադրանքի բարձր որակը, ապա նա փոխադրվում է այնպիսի տեղամաս, որտեղ հնարավորություն ունենա ավելի օգտակար լինելու, ինչպես հարկն է, դրսևորելու իրեն։ Մրցույթի այս ձևը ի հայտ է բերում ո՛չ միայն լավագույնին, այլև՝ խոտանարարին, նպաստում արտադրանքի որակի էական բարելավմանը։ Եվ այդ մրցույթի մասնակիցները ջանում են խորանալ իրենց մասնագիտության մեջ, բարձրացնել որակավորումը, ամեն ինչ անել լավ։

Վ. Ի. Լենինը սոցիալիստական մրցության կազմակերպման գործում անչափ կարևորում էր մրցության առաջավորների նյութական ու բարոյական խթանումը։ Ղեկավարվելով լենինյան ցուցումներով՝ ՍՄԿԿ Կենտկոմը «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» 1971 թվականի որոշմամբ պահանջում է անընդհատ կատարելագործել մրցողների նյութական ու բարոյական խրախուսման ձևերը։ Այդ պահանջն այստեղ կիրառվում է նաև արտադրանքի որակի առնչությամբ։ Անձնական դրոշմով աշխատողներին, օրինակ, տրվում է հավելավճար՝ ամսվա վաստակի 10—15 տոկոսի չափով։ Կուսբյուրոն, դիրեկցիան ու գործարհկոմը սահմանել են «Որակի գերազանցիկ» հուշադրոշ՝ բարձրորակ արտադրանքի համար ծավալված մրցությունում հաղթող բրիգադին հանձնելու համար։ 1977-ի տարեկան արդյունքներով այդ պատվին արժանացավ մեզ արդեն ծանոթ Խաչիկ Աբգարյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադը։

«Փակել խոտանի ճամփան», «Մեր մակնիշը մեր պատիվն է», «Յուրաքանչյուր բանվորի արտադրանքի բարձր որակից՝ կոլեկտիվի բարձրարդյունավետ աշխատանքին»— այսպիսի նշանաբաններով են էլեկտրաապարատավարներն սկսում աշխատանքային օրը։ Ամեն կերպ խրախուսելով ու մեծարելով բարձրորակ արտադրանք թողարկող բանվորներին, որակի համար ծավալված պայքարի առաջամարտիկներին՝ կուսբյուրոն ու դիրեկցիան բոլոր միջոցներով ձգտում են կանխել խոտանը, խոտանարարների շուրջն ստեղծել հասարակական



պարսավանքի մթնոլորտ։ Բոլոր արտադրամասերում յուրաքանչյուր ամսվա վերջում հատուկ ցուցատախտակին գրվում է ոչ միայն ամենաբարձրորակ արտադրանք թողարկողի, այլև խոտան արտադրանքի հեղինակի անուն-ազգանունը։ Նույն բանը, և՛ գործարանային ցուցատախտակին։ Գործող կանոնին համապատասխան և կուսբյուրոյի անմիջական ցուցումով անցած տարվա վերջերին ՊԼ—2300 վահաններ մոնտաժող բրիգադը (բրիգադավար՝ Վլադիմիր Վարդանյան), սպառողներից ստացած բողոքի պատճառով, զրկվեց անձնական դրոշմով աշխատելու իրավունքից։ Այդ բրիգադի անունը տեղ գտավ խոտանարարների ցուցակում։

## ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐ

Արտադրանքի բարձր որակն արդյունավետության կարևոր ցուցանիշ է։ «1978 թվականի պլանի կատարման ու գերակատարման համար սոցիալիստական մրցություն ծավալելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման համար պայքարն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակում այդ առթիվ ասվում է. «Ակտիվորեն պայքարել արդյունավետության համար՝ նշանակում է անշեղորեն բարելավել արտադրանքի որակը՝ բարձրացնել նրա տեխնիկական մակարդակը, հուսալիությունն ու երկարակեցությունը։ Արտադրանքի որակում, ինչպես կիզակետում, կենտրոնանում են թե՛ գիտության ավանդը, թե՛ արտադրության տեխնիկական մակարդակը, թե՛ կոլեկտիվի ամբողջ գործունեությունը»։ Բավական է ասել, որ միայն որակի պետական նշանով թողարկվող արտադրանքն այս առաջավոր ձեռնարկությանը ապահովում է 32 տոկոսի շահութաբերություն։ Օգուտը հաշվվում է հազարավոր ռուբլիներով։

Ծանոթանալով ու հավանություն տալով այդ նամակին՝ գործարանի կոլեկտիվը մեծ խանդավառությամբ ներգրավվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և ընթացիկ տարվա համար ևս նախանշեց որակական ցուցանիշների բարձր բնագծեր։ Երեք տարվա պլանը ՍՍՀՄ Սահմանադրության օրը՝ հոկտեմբերի 7-ին, կատարելու խոստման հետ միասին, էլեկտրաապարատավարները պարտավորվել են՝ ներդնել 5 նոր ստանդարտ, արտադրանքի 95 տոկոսը հանձնել առաջին ներկայացմամբ, 83 տոկոսը թողարկել որակի պետական նշանով, ևս 40 բանվորի տալ անձնական դրոշմով աշխատելու իրավունք, ապահովել 150 բանվորի որակավորում, իսկ 50-ին սովորեցնել երկրորդ մասնագիտությունը, չունենալ խոտանի ու բողոքների դեպքեր և այլն։

Այս առաջավոր ձեռնարկությունում արտադրանքի բարձր որակի համար պայքարը շարունակվում է ամեն օր, ամեն ժամ, պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը գործարանի կուսակցական կազմակերպությունն է։

## 150 ՀԱՎԵՐԺ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՌՈՒՍԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՐՄԱՏՆԵՐԸ

**Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ

*ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ միացումը Ռուսաստանին խոշորագույն իրադարձություն էր հայ ժողովրդի կյանքում: Այն կանխորոշեց մեր ժողովրդի զարգացման հետագա ամբողջ ընթացքը, հնարավորություն ընձեռեց նրա ազգային կոնսոլիդացման, սոցիալ-տնտեսական համեմատաբար ավելի արագ զարգացման, դեմոկրատական հասարակական-քաղաքական մտքի ձևավորման, ազգային կուլտուրայի վերածնման համար: Իր բախտը կապելով Ռուսաստանի հետ՝ հայ ժողովրդի արևելյան հատվածը, ռուս ժողովրդի օգնությամբ, ազատագրվեց պարսիկների ու թուրքերի դարավոր լծից, ընդգրկվեց բարձրացող Ռուսաստանի կազմի մեջ, որը և օբյեկտիվ նախադրյալներ ստեղծեց հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարը միաձուլելու ռուս մեծ ժողովրդի սոցիալական պայքարին, որի հաղթանակը բախտորոշ եղավ հայության համար:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հանդիսացավ հայ ժողովրդի սոցիալիստական պետականության ստեղծման վճռական գործոնը: Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն ապահովեց Սովետական Միության բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի տնտեսության ու կուլտուրայի աննախընթաց ծաղկումը. գոյավորվեց պատմական նոր հանրություն՝ կոմունիզմ կառուցող սովետական միասնական բազմազգ ժողովուրդը:*

*ԴԺՎԱՐ Է ԳԵՐԱԳՆԱՀԱՏԵԼ ՌՈՒՍԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՄԱՆ ԴԵՐԸ հայ ժողովրդի հասարակական-քաղաքական կյանքում: Մեծ Ռուսաստանի հետ իր բախտը կապելու՝ հայ ժողովրդի անդրդվելի ձգտումը սկսվել է դարերի խորքից, տառապանքներից ծնված պրոգրեսիվ նկրտումից: Այս իրողությունը բնավ չի անտեսում ցարիզմի քաղաքականության նվաճողական բնույթը: Ռուս բուրժուազիան ու կալվածատերերը ձգտում էին նվաճել նոր գաղութներ, հարստանալ «այլազգիներին» շահագործելու միջոցով: Նրանց ամենից առաջ հետաքրքրում էին հումքի հարուստ աղբյուրները և էժան բանվորական ուժը:*

*Արևելքի ժողովուրդների նկատմամբ Ռուսաստանի խաղացած պրոգրեսիվ դերի մասին Ֆ. Էնգելսի գնահատումները ճիշտ ըմբռնելու համար անհրաժեշտ է հստակ սահմանազիծ անցկացնել Ռուսաստանի տիրապետող դասակարգերի զավթողական, գաղութատիրական քաղաքականության և բուն ռուս ժողովրդի համազգային շահերի ու ձգտումների միջև: Միայն նման մոտեցմամբ հնարավոր է օբյեկտիվ գնահատել Արևելյան Հայաստանի՝ Ռուսաստանին միավորվելու պատմական ակտի պրոգրեսիվ նշանակությունը:*

*Սույն հոդվածում անհրաժեշտ ենք համարում ցույց տալ, որ հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը պատմական օբյեկտիվ արմատներ ունի. այն սկիզբ է առել XVI դարում և XVII դարից սկսած վերածվել է ազատագրական շարժման գաղափարախոսության: Հայերի ռուսական կողմնորոշումը եղել է համաժողովրդական: Դրա կրողները եղել են ժողովրդական լայն մասսաները, իսկ իշխող վերնախավը, հարելով դրան, հետապնդել է դասակարգային իր շահերը: Հայ և Անդրկովկասի մյուս ժողովուրդների ռուսական կողմնորոշումը նպաստել է նրանց պատմական կապերի ամրապնդմանը:*

*Տակավին Անդրկովկասի Ռուսաստանին միավորվելուց առաջ Ռուսաստանն օբյեկտիվորեն, ցարիզմի նվաճողական նկրտումներից անկախ, դրական դեր է խաղացել հայ ժողովրդի ազատագրական շարժման ծավալման գործում, նպաստելով Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը:*

*Դարեր շարունակ քաղաքական կախվածության մեջ լինելով Թուրքիայից ու Պարսկաստանից կամ գտնվելով նրանց իշխանության տակ, Անդրկովկասի ժողովուրդները կորցրել էին իրենց պետականությունը, ենթարկվել ազգային ու սոցիալական դաժան ճնշման: Նրանց մշտապես սպառնում էր ձուլման կամ ֆիզիկական ոչնչացման վտանգը: Արևմտյան տերությունները, որոնցից Անդրկովկասի ժողովուրդներն սկզբնապես ակնկալում էին իրենց անկախության վերականգնման ու ազգային ինքնուրույն զարգացման հույսերը, ո՛չ միայն նրանց իրապես չէին օգնում, այլև, քամահրելով նրանց շահերը, հետապնդում էին նվաճողական նպատակներ:*

*Երկրամասի ժողովուրդների ազատագրական շարժման մեջ եղել են նաև հակառուսական տրամադրություններ կրողներ, սակայն ազատագրական պայքարի պրոցեսում, որը զուգորդվում էր դասակարգային պայքարի հետ, նրանք աստիճանաբար կորցրին իրենց ազդեցությունը և դադարեցին ռեալ ուժ լինելուց:*

*Անդրկովկասի ժողովուրդների ռուսական կողմնորոշման սկզբնավորումը հետևանք էր այդ ժողովուրդների հասարակական կյանքի էությունը բնորոշող տնտեսական, սոցիալական ու քաղաքական բարդ գործոնների ազդեցության:*

*Արդեն XV դարում Անդրկովկասի ժողովուրդների առաջադեմ ներկայացուցիչներն սկսեցին իրենց հայացքն ուղղել դեպի բարձրացող Ռուսաստանը: Սակայն դարերի խորքից են գալիս տեղեկությունները նրա հետ ունեցած կապերի մասին: Հայ և ռուս տարեգիրները, օրինակ, վկայում են, որ տակավին XI դարի կեսերին հայերը մասնակցել են Ռուսիայի մղած պատերազմներին, որի համար իրավունք են ստացել «Կիևում կառուցելու հայ լուսավորչական դավանանքի քարաշեն եկեղեցի»: Հայերը Կիևի իշխանությանը մատուցել են նշանակալի ծառայություններ ինչպես զենքով, նույնպես և տարբեր արհեստների զարգացմամբ: «Մոնոմախի ժամանակներում,— հավաստում է Կարամզինը,— Կիևում հռչակված էին հայ բժիշկները»* (Н. М. Карамзин. История государства Российского. Изд. 5, СПб, 1842—1843, т. III, стр. 130):

*Վլադիմիր Մոնոմախի պալատում կային նաև հայ նկարիչներ: XI դարից հայ վաճառականներն առևտուր էին անում Ռուսիայի կենտրոնական քաղաքներում: Այդ մասին են վկայում Բուլղար քաղաքի ավերակներում պահպանված XI—XV դարերի հայերեն արձանագրությունները, որոնք 1722 թ. Պետրոս Մեծի հրամանով առաջին անգամ թարգմանվել են ռուսերեն:*

*Պոլոլժիեում հայերը երևացել են տակավին X դարում: XIII դարի կեսերին գրավելով Հայաստանը, թաթար մոնղոլները նրա շատ բնակիչների վերաբնակեցրին Աստրախանում ու Կազանում, իսկ մոնղոլական լծի անկումից հետո մերձվոլգյան հայերը տեղափոխվեցին Ղրիմ: Աղբյուրների վկայությամբ Կաֆա (Թեոդոսիա) քաղաքում հայերն ունեին 29 եկեղեցի, իսկ նրա արվարձաններում՝ 10: XIII դարի կեսերին է վերաբերում նաև Լվովի հայկական գաղութի առաջացումը: XVI դարի կեսերից հայկական գաղութ գոյություն ուներ Մոսկվայում: Այստեղ,*

Կարմիր հրապարակի վրա, ի նշանավորումն Կազանի խանության դեմ տարած հաղթանակի, Իվան Ահեղի հրամանով կառուցվեց Պոկրովկու (Վասիլի Երանելու) տաճարը։ Պատմական աղբյուրների վկայությամբ այդ տաճարն ուներ երկու հարկ։ Վերնահարկում ինը կցաշենքերից մեկը կրում էր Գրիգոր Լուսավորչի անունը։ Այդ կցաշենքին տրված էր հայկական աղոթարանի տեսք. ցարն այդ արեց ի մխիթարություն այն հայ առևտրականների, որոնք Կազանի դաժան ջարդերից հետո, այնտեղից տեղափոխվել էին Մոսկվա և բնակվել, այսպես կոչված՝ «Բելի-գորոդ»-ում — ազատ արտոնություններից օգտվող մարդկանց շրջանում (տե՛ս «Кавказский вестник», год второй, декабрь 1901, № 12, стр. 50, 54):

Նման արտոնությունների արժանանում էին այն օտարերկրացիները, որոնք գործով էին հավաստում իրենց նվիրվածությունը։

Ռուսաստանի և Ուկրաինայի հայկական գաղութներում հայերը լայն հնարավորություններ ստացան պահպանելու իրենց սովորույթները, հավատն ու ավանդույթները, նրանց չէր սպառնում ֆիզիկական ոչնչացման վտանգը։ Այդ գաղութները դրական դեր խաղացին հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման ձևավորման խնդրում, նրանց կապելով Ռուսաստանի տնտեսական ու քաղաքական կյանքին։

Ռուսների հետաքրքրությունն Անդրկովկասի նկատմամբ դրսևորվում է դեռևս Կիևյան Ռուսիայի առաջացման ժամանակաշրջանում։

Հետագայում, XV դարի կեսերին, Մոսկովյան պետության հզորացմանը զուգընթաց, առավել ծավալվում են ռուս-անդրկովկասյան հարաբերությունները։ Ռուս-անդրկովկասյան հարաբերությունների հետագա զարգացմանը խանգարում էին Թուրքմենական Ակ-Կոյունլու ցեղերը, որոնք այդ ժամանակ իշխում էին Ադրբեջանում և Հայաստանում։

Թուրքերի կողմից Կոստանդնուպոլսի (1453 թ.), այնուհետև նաև Սև ծովի ափի (1475 թ.) գրավումը, թուրքական կայսրության ագրեսիվ նկրտումները ռեալ վտանգ էին ներկայացնում Անդրկովկասի ժողովուրդների համար և որոշակիորեն սպառնում բարձրացող Ռուսաստանի շահերին։ Տնտեսական ու քաղաքական այդ շահերն էլ թելադրեցին Ռուսաստանին դաշնակիցներ փնտրել Անդրկովկասում։ XVI դարում թուրքերի և Սեֆյան Պարսկաստանի միջև Անդրկովկասի համար մղվող պայքարը սրվում է ։ 1514 և ապա 1533—35 թթ. թուրքերը Պարսկաստանի դեմ մղվող առաջին և երկրորդ պատերազմների ժամանակ ներխուժեցին Արևմտյան Հայաստան։ 1554 թ., սանձազերծված նոր պատերազմի հետևանքով, թուրքական հորդաները հասան մինչև Արարատյան դաշտ և, իրենց ճանապարհին ավերելով ամեն ինչ, գրավեցին Երևանը ու հրդեհեցին այն։ Ութամյա պատերազմն ավարտվեց 1555 թ. կնքված Ամասիայի պայմանագրով։ Անդրկովկասը բաժանվեց։ Արևմտյան մասն անցավ Թուրքիային, իսկ Ադրբեջանը, Արևելյան Վրաստանն ու Արևելյան Հայաստանը մնացին Պարսկաստանի կազմում։

Հայաստանի տերիտորիայի բաժանումը արևելյան երկու բռնակալական տերությունների միջև, հետագա դարերում ճակատագրական նշանակություն ունեցավ հայ ժողովրդի կյանքում։ Այդ ժամանակվանից ի վեր հայոց ազատագրական պայքարի նպատակն է եղել ո՛չ միայն վերականգնել հայկական պետականությունը, այլև միավորել երկրի արևելյան ու արևմտյան հատվածները։ Այդ օրերից իսկ հայկական հարցը դարձավ արևմտյան խոշոր տերությունների դիվանագիտական մեքենայությունների առարկա։

Անդրկովկասի ժողովուրդների ընդհանուր ճակատագիրը, ընդհանուր շահերն ու խնդիրներն ազատագրական պայքարում ամրապնդեցին նրանց բարեկամությունն ու փոխադարձ կապերը։ Հայ ազատագրական շարժման գործիչները, ձգտելով վերականգնել իրենց երկրի անկախությունը, աջակցություն էին փնտրում «քրիստոնյաների պաշտպան» Հռոմի պապի և եվրոպական մի շարք տերությունների մոտ և համոզվելով, որ իրենց որոնումներն ապարդյուն են, հայացքները հառում էին Ռուսաստանին։ Անդրկովկասի ժողովուրդների ռուսական կողմնորոշման ձևավորման խնդրում խոշոր դեր է խաղացել Վրաստանը, որը XVI դարի վերջին քառորդում անվերապահորեն կողմնորոշվեց դեպի Ռուսաստան, իսկ վերջինս խոստացել էր նրան իր հովանավորությունը։ Այդ շրջանում Ռուսաստանի հովանավորությունն էին փնտրում նաև Ադրբեջանի մի շարք կառավարողներ։ Դրա վկայությունն է Շիրվանի խան Աբդուլայի,



ինչպես նաև ադրբեջանական հողերի այլ տիրակալների՝ Մոսկվայի հետ բարեկամական կապեր հաստատելու ձգտումը։

Հայտնի է, որ եվրոպական խոշոր տերությունների շահադիտական նկրտումները Հայաստանի նկատմամբ՝ հարուցում էին նրանցից օգնություն ակնկալելու պատրանքներ։ Հայոց կաթողիկոս Ստեփանոս Սալմաստեցին դեռևս մինչև Հայաստանի բաժանումը, հայ իշխանների՝ Էջմիածնում կայացած (1547 թ.) խորհրդակցության հանձնարարությամբ 1549—50 թթ. հատուկ միսիայով եղավ Վենետիկում, Հռոմում, Վիեննայում, Լվովում, բայց ոչ մի օգնություն չստացավ։ Ապարդյուն ավարտվեց նաև կաթողիկոս Միքայել Սեբաստացու առաքելությունը 50—60 թթ.։ Այդ շրջանից ի վեր սկսում է խորանալ հայերի հիասթափությունը եվրոպական պետություններից, բայց դեռևս պահպանվում է հավատի պատրանքը։

Անդրկովկասի ժողովուրդների վիճակն ավելի էր ծանրացել թուրքերի և պարսիկների միջև չդադարող կռիվների հետևանքով։ 1590 թվականին Ստամբուլում կնքված պայմանագրով Հայաստանի մեծ մասն անցավ Թուրքիային։ Թուրքական Լալա Մուստաֆա փաշան Հայաստանում հաստատեց կառավարման օսմանյան սիստեմ, դաժան տեռորի, կողոպուտի, բռնությունների և նվաստացումների ենթարկելով գրավված տարածքների ժողովուրդներին։ 1596 թվականին, բողոքելով այդ ամենի դեմ՝ ռուսական ցարը պահանջում էր թեթևացնել նվաճված ժողովուրդների վիճակը։

XVII դարից ռուսական պատմության մեջ սկսվում է նոր ժամանակաշրջան, որը, ինչպես նշել է Լենինը, բնորոշվում է բոլոր մարզերի, երկրների և իշխանությունների իսկապես փաստական միաձուլումով մի ամբողջության մեջ (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ., հ. 1, էջ 179)։ Դրանով էլ բացատրվում է Ռուսաստանի արևելյան քաղաքականության ակտիվ ընթացքն Անդրկովկասում։

Այդ շրջանից սկսած հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը հետզհետե ամրանում է։ Թուրքիան ու Պարսկաստանը հայրենիք չեն եղել հայերի համար։ Եվ, եթե այս շրջանում հայ ժողովրդի ազատագրական պայքարը բուռն չի եղել, դա բացատրվում է ոչ թե նրանով, որ ժողովուրդը հաշտվել է իր վիճակի հետ։ Տնտեսական մասնատվածությունը, ֆեոդալական իշխանությունների երկպառակությունները, օսմանների ու պարսիկների հրահրած միջցեղային ու կրոնական թշնամանքն արգելակում էին նրանց ենթակա ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը։

Պարսկաստանի ու Թուրքիայի միջև Անդրկովկասի համար չլուծված վեճը շարունակվեց XVI դարում։ Անդրկովկասի ժողովուրդների «պատմության վարագույրը» XVII դարում բացվում է Պարսկաստանի և Թուրքիայի միջև 1603 թվականին վերսկսված նոր գոտեմարտով։ Մերթ Թուրքիան, մերթ Պարսկաստանը գրավում էին Անդրկովկասի այս կամ այն տարածքը, ավերում այն, կողոպտում...

Ավերիչ պատերազմները պարսիկների և թուրքերի միջև շարունակվեցին և Աբասի մահից հետո։ 1635 թվականին սուլթան Մուրադ 4-րդը նոր պատերազմ սկսեց Պարսկաստանի դեմ, գրավեց ու կրկին ավերեց Երևանը՝ գերիների ուժերով վերականգնելով միայն քանդված Երևանի ամրոցը։ Մեկ տարի անց, հավաքելով մեծ զորք, պարսկական շահը թուրքերից ետ վերցրեց Երևանը և նորից քանդեց, ավերեց...

Երկարատև պատերազմներից հետո, 1639 թվականին, կնքվեց հաշտություն, որի համաձայն Արևելյան Հայաստանը, Երևանի հետ միասին, մնացին Պարսկաստանին. այն փաստորեն վերահաստատեց 1555 թվականի պայմանագիրը։

Այդ ժամանակաշրջանում ոչ միայն իշխող վերնախավը, այլ լայն մասսաները ևս սկսում են հասկանալ, որ իրենց փրկությունը Հյուսիսի մեծ հարևանի՝ ռուս ժողովրդի բարեկամությանն ապավինելն է։ Հենց XVII դարում է սկսում ռուսական կողմնորոշումը դառնալ համաժողովրդական գաղափարախոսություն։

Սակայն Անդրկովկասում Պարսկաստանի և Թուրքիայի զավթողական քաղաքականությանը դիմագրավելու Ռուսաստանի ձգտումներն ի դերև ելան,

շա՞տ է նա, և ի՞նչ տեղերում է ապրում և նրանց մեջ իշխանական և վաճառականական ինչպիսի՞ անվանի մարդիկ կան և որքանո՞վ են նրանք ցարական մեծության կողմը, նրանց հետ վարվել սիրալիր և հակել մեր կողմը։

Վոլինսկին 1718 թ. վերադարձավ Ռուսաստան և Պետրոս Առաջինին նորից համոզեց հայերի հավատարմության մասին։ 1722 թ. օգոստոսին ռուսական զորքերը շարժվեցին դեպի Անդրկովկաս, գրավեցին Դերբենդը և մոտեցան Բաքվին, սակայն չգրավեցին այն։ Պետրոս Առաջինը շուտով վերադարձավ Պետերբուրգ։ Դա հիասթափեցրեց տեղացի բնակչությանը, սակայն չկասեցրեց նրանց ջանքերը։ Այդ մասին են վկայում Պետրոս Մեծին ուղղված Մինաս վարդապետի ուղերձը (1722 թ. սեպտեմբերի վերջերին), կաթողիկոս Ներսեսի խնդրանքը (1723 թվականի մարտին) և այլն։ Այսպիսով, XVIII դարի սկզբին հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումն արդեն համաժողովրդական բնույթ էր կրում. սոցիալական բոլոր խավերը եկել էին այն համոզման, որ կարելի է հույս դնել միայն Ռուսաստանի և ռուս ժողովրդի օգնության վրա։ Պետրոս Առաջինն ամեն կերպ սատարում էր այդ հույսերին։

Այս շրջանում Սյունիքում Դավիթ Բեկի գլխավորած ապստամբության նպատակն էր Ռուսաստանի օգնությամբ թոթափել օտար բռնակալների տիրապետությունը։ Այդ ապստամբությանը բազմակողմանի աջակցություն էր ցույց տալիս վրաց թագավոր Վախթանգ VI-ը, որը լինելով ռուսական կողմնորոշման ջատագով, ձգտում էր թուրքերի ու պարսիկների դեմ Անդրկովկասի ժողովուրդների ապստամբական ելույթներով ամրապնդել ռուսների՝ Անդրկովկաս զորքեր ուղարկելու մտադրությունը։ Մյուս կողմից, այս ապստամբության հաղթանակին, որը քաղաքական հարաբերական անկախություն բերեց Ղարաբաղին ու Սյունիքին, նպաստեց Պետրոս Առաջինի պարսկական արշավանքը։

1723 թ. թուրքերը ներխուժեցին Անդրկովկաս։ Նրանց առաջխաղացման դեմն առնելու նպատակով ռուսական զորքերը հուլիսին գրավեցին Բաքուն, իսկ սեպտեմբերին կնքեցին պայմանագիր Պարսկաստանի հետ՝ խոստանալով օգնություն թուրքերի դեմ մղվող պատերազմում։

Պետրոս Մեծը շահագրգռված էր Անդրկովկասի ժողովուրդների ազատագրական ջանքերի միավորմամբ։ Այդ մասին է վկայում հատկապես նրա ներկայացուցիչ Իվան Կարապետի առաքելությունը Անդրկովկաս, 1723 թ.։ 1724 թ., դիմելով Գանձակի ադրբեջանցիներին, Իվան Կարապետը գրում էր. եթե ուզում եք ստանալ մեծ թագավորի հովանավորությունը, ապա պետք է բարեկամ լինեք հայերին։ Իսկ Ռուսաստան ուղարկած իր զեկուցագրում նա հայտնում էր, որ դադարել են թուրքական գործակալների հրահրած գժտությունները հայերի և ադրբեջանցիների միջև, որ նրանք, ինչպես և վրացիները, պատրաստակամություն են հայտնում Ռուսաստանի օգնությամբ համատեղ պայքարելու թուրքերի դեմ, բայց վախենում են «ռուսները չգան, և այն ժամանակ իրենց բանը վատ կլինի»։

Փոխադարձ օգնության մասին 1724 թվականի մարտին կնքված հայ-ադրբեջանական պայմանագիրը Ռուսաստանի բարերար ազդեցության արգասիք էր։ Այդ ժամանակ ռուս-թուրքական հարաբերությունները խիստ սրվում են, և պատերազմը կանխելու նպատակով Պետրոս Առաջինը 1724 թ. պայմանագիր է կնքում թուրքերի հետ, որի համաձայն Թուրքիան Անդրկովկասում ճանաչում է Ռուսաստանի այն սահմանները, որոնք որոշված էին 1723 թ. ռուս-պարսկական պայմանագրով։ Թուրքիային են անցնում Վրաստանի և Հայաստանի՝ իր զավթած մարզերը։ Այդ պայմանագիրը նկատելի հիասթափություն հարուցեց Անդրկովկասի ժողովուրդների շրջանում։ Սակայն Պետրոս Առաջինը ջանում էր ամեն կերպ պաշտպանել այդ ժողովուրդների բարյացակամությունը Ռուսաստանի հանդեպ։ Նա հանձնարարում է Անդրկովկասում ռուսական զորքերի հրամանատար Մատյուշկինին. «Բոլոր հնարավոր միջոցներով հայերին ու վրացիներին հրավիրի ինչպես ծառայության, այնպես էլ բնակության, որպես այդ հրամայված է նախկին հրամանագրերով»։

Պետրոս Մեծի մահը խիստ թուլացրեց Ռուսաստանի արևելյան ակտիվ



քաղաքականությունը։ Մինչև Եկատերինա Երկրորդի գահ բարձրանալը, Պետրոս Առաջինի ապաշնորհ հետնորդները ո՛չ միայն չկարողացան պահպանել նրա նվաճած դիրքերն Անդրկովկասում, այլև տերիտորիալ մեծ զիջումներ կատարեցին թուրքերին և հատկապես՝ պարսիկներին։ 1732 թ. Ռեշտում և 1735 թ. Գանձակում կնքված ռուս-պարսկական պայմանագրերով Պարսկաստանին վերադարձվեցին մինչ այդ գրավված տերիտորիաները, իսկ ռուսական զորքերը ետ քաշվեցին դեպի հյուսիս։ Արևելյան Հայաստանն ընկավ Նադիր շահի դժնդակ տիրապետության տակ. մոլեգնում էին դաժան հալածանքը, բռնությունն ու արտագաղթը։ Անդրկովկասում իրար էին հաջորդում ապստամբությունները Նադիրի տիրապետության դեմ։ 1747 թվականին իր մերձավորների կողմից սպանվեց Նադիրը, որից հետո սկսեց նկատելիորեն թուլանալ պարսկական պետականությունը։ Այդ նպաստեց ազատագրական պայքարի ուժեղացմանն Անդրկովկասում։

XVIII դարի երկրորդ կեսին տեղի է ունենում հայերի մասսայական արտագաղթ դեպի ռուսական շրջանները՝ Աստրախան, Մոզդոկ, Ղզլար և այլ քաղաքներ։ Ինչպես այդ երևույթը, նույնպես և ազատագրական շարժման ականավոր գործիչների հանդես գալը վկայում են, որ հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը մնացել էր անսասան։ Ռուսական կառավարությունը ևս շարունակում էր հովանավորել հայերին։

XVIII դարի երկրորդ կեսում հայ ժողովրդի ազատագրական շարժման խոշոր գործիչն էր Հովսեփ Էմինը։ Իսրայել Օրու և Հովսեփ Էմինի ազատագրական ծրագրերում կան ընդհանրություններ. այդ ցույց է տալիս, որ Հովսեփ Էմինը լավատեղյակ էր մեր ժողովրդի ազատագրական շարժման նախորդ շրջանի անցուդարձերին։ Հայտնի է Իսրայել Օրու և վրացական թագաժառանգ Արչիլի ջերմ բարեկամությունը. Հովսեփ Էմինն էլ բարեկամական կապեր էր հաստատել վրացական թագավորներ Թեյմուրազ Երկրորդի և նրա որդու՝ Հերակլ Երկրորդի հետ։

Երկար թափառելով Եվրոպայում, Էմինը փայփայում էր այն հույսը, թե կսովորի պատերազմ վարելու արվեստը, քանզի հայ ժողովրդի ազատագրական պայքարի հաղթական վախճանը նա կապում էր զինված պայքարի հետ։ Լինելով Հայաստանում, նա բախվեց հուսալքող իրողության հետ՝ հայ ժողովրդի միասնության բացակայությանը, որը խափանում, ջլատում էր ժողովրդի դիմադրական ոգին։

Դարեր շարունակ գտնվելով օտար տիրապետության տակ, ինքնուրույն զարգացման հնարավորությունից զուրկ, հայերը բռնի ասիմիլացվում էին։ «Նրանց,— գրում է Էմինն իր ինքնակենսագրության մեջ,— համոզել էին, թե ի սկզբանե անտի «աշխարհի արարման» օրից ի վեր նրանք եղել են Պարսկաստանի ու Թուրքիայի իշխանության տակ և այդպես է լինելու մինչև Քրիստոսի հայտնությունը»։ Մի անգամ, երբ գյուղացիները հայտնեցին Էմինին այդ «ճշմարտությունը», նա նրանց համար կարդաց Մովսես Խորենացու «Հայաստանի պատմությունը». գյուղացիները զարմանքով իմացան, որ հայերն էլ ունեն իրենց պատմությունը, որ նրանք էլ երբեմնի մեծ պետության ժողովուրդ են եղել։

Էմինը համոզված էր, որ հայերի ազատագրումը հնարավոր է միայն Ռուսաստանի օգնությամբ և Վրաստանի դաշնակցությամբ։ Երբ Պետերբուրգում նա հանդիպեց վրաց թագավոր Թեյմուրազ Երկրորդին (որն այնտեղ էր եկել 1760 թ.), այնքան մտերմացավ նրա հետ, որ հայ-վրացական դաշինքն ամրապնդելու նպատակով Թեյմուրազը նույնիսկ մտադրվել էր իր դստերը կնության տալ Էմինին։

Սակայն Թեյմուրազի, ինչպես և կայսրուհի Ելիզավետա Պետրովնայի մահը խանգարեցին Էմինի առաքելության իրականացմանը։ Թեյմուրազի մահից հետո նրա թագավորությունը ևս անցնում է Հերակլ Երկրորդին։ Վերջինս մեծ ծառայություններ ունի հայ-վրացական բարեկամության ամրապնդման գործում։ Սակայն Էմինը չկարողացավ համոզել Հերակլին՝ կնքելու հայ-վրացական պայմանագիր։ Չնայած Հերակլ Երկրորդը հակված էր հավանություն տալու այդ նախագծին, բայց ստիպված էր հրաժարվել դրանից, քանի

որ բուն Հայաստանում ազդեցիկ հոգևորականությունը (մասնավորապես Սիմոն կաթողիկոսը) դեմ էր դրան՝ վախենալով պարսիկների վրեժխնդրությունից։

Անհաջող ավարտվեցին նաև Էմինի փորձերը՝ միավորելու արևմտյան և արևելյան հայերի բոլոր ջանքերը՝ վրացիների հետ միասին և Ռուսաստանի օգնությամբ հասնելու հայերի ազատագրմանը։ 60-ական թվականների վերջերին Էմինը վերադարձավ Հնդկաստան։ Այստեղ հայերը նրան առաջարկեցին ցանկացած միջոցները, եթե նա կրկին որոշի գնալ Հայաստան, Էմինը, սակայն, հասկացել էր, որ լոկ հայրենասիրական պոռթկումներով այն ժամանակվա պայմաններում ոչինչ հնարավոր չի անել։ Նա կապեր է հաստատում այդ ժամանակ Մադրասում գործող Շահամիր Շահամիրյանի խմբի հետ, որը նույնպես հայերի ազատագրման գաղափարը կապում էր Ռուսաստանի օգնության հետ։

1762 թ. Ռուսաստանում գահ բարձրացավ Եկատերինա Երկրորդը։ Նա, ըստ էության, հարություն տվեց Պետրոս Մեծի արևելյան քաղաքականությանը, որին հավատարիմ մնաց մինչև կյանքի վերջը։

1768 թ. Թուրքիան հարձակվեց Ռուսաստանի վրա, որի դեմ Անդրկովկասի ժողովուրդների բլոկ ստեղծելու թուրքական սուլթանի բոլոր փորձերն ապարդյուն անցան։ Անդրկովկասում արթնացան Ռուսաստանի օգնությամբ թուրքերի ու պարսիկների լծից ազատագրվելու հույսերը։ Սակայն, ելնելով երկրի միջազգային դրությունից, Եկատերինան ստիպված էր 1772 թ. զորքերը դուրս բերել Վրաստանից, իսկ 1774 թ. արագ ավարտել թուրքերի դեմ մղվող պատերազմը։ Անդրկովկասում շատ ցավագին ընդունվեցին պատերազմի արդյունքները, քանի որ Քյուչուկ-Կայնարջիի պայմանագրով Թուրքիային վերադարձվեցին Վրաստանի այն տարածքները, որոնք նվաճվել էին ռուսական զենքով։

Եկատերինան 80-ական թվականներին կրկին ակտիվացրեց իր քաղաքականությունն Անդրկովկասում, այս անգամ արդեն նպատակ ունենալով նվաճել այն։ Պարսկաստանի դեմ նոր արշավանքի նախապատրաստումը հանձնարարվեց փառապանծ զորավար Սուվորովին, որը սերտ կապերի մեջ էր հայ քաղաքական գործիչների հետ և հավանություն էր տալիս Ռուսաստանի օգնությամբ Հայաստանի ազատագրման նախագծին, որը կազմել էր Հ. Լազարյանը։

Էջմիածնում 1782 թ. դեկտեմբերին գումարվեց հայ հոգևորականության և մելիքների ժողով, որտեղ որոշվեց «նախկինից առավել նվիրվել ռուսական կայսերական գահին և խնդրել Հայաստանի նկատմամբ ցուցաբերել գթասիրտ հովանավորություն և բարեհաճություն»։ Այս խնդրագիրն իր քաղաքական արժեքով համազոր է վրաց թագավոր Հերակլ Երկրորդի՝ նույն թվականին Եկատերինա Երկրորդին հղած խնդրագրին։ Վրացական պետության գոյության փաստով է պայմանավորված 1783 թվականին Գեորգիևսկում կնքված ռուս-վրացական պայմանագիրը, որով Վրաստանն անցնում է Ռուսաստանի հովանավորության տակ. մինչդեռ հայ պետականության բացակայության պատճառով Էջմիածնի ժողովի խնդրագիրը չհանգեցրեց և չէր էլ կարող հանգեցնել նույն արդյունքին։

Գեորգիևսկի պայմանագրի կնքումը մեծ խանդավառություն առաջացրեց հայ ազատագրական շարժման ղեկավար շրջաններում։ Այդ առիթով Շահամիր Շահամիրյանը Հերակլ Երկրորդին հարուստ ընծաների հետ միասին ուղարկեց վրաց-հայկական գերբի սեփական նախագիծը, որը խորհրդանշում էր Հերակլի գլխավորությամբ վրաց-հայկական միացյալ պետություն ստեղծելու գաղափարը։ Հայաստանի ազատագրումն այդ ժամանակ այնքան ռեալ էր թվում, որ Ռուսաստանում ևս հայ եկեղեցու առաջնորդ Հովսեփ Արղությանը հանդես եկավ Ռուսաստանի հովանու ներքո հայկական պետության վերականգնման իր նախագծով։

Ղարաբաղի և Ղարադաղի հայերը 1783 թ. մարտին համախոսական ուղարկեցին Եկատերինա Երկրորդին նույնպիսի խնդրանքով, իսկ իշխան Պոտյոմկինը կայսրուհու անունից հուսադրեց նրանց՝ կատարելու այդ խնդրանքը։



Եկատերինա Երկրորդը ռեալ պլաններ էր մշակել՝ գրավելու Անդրկովկասը։

Ֆրանսիայում ծագած հեղափոխությունը, Անգլիայի խարդավանքները, Ռուսաստանի միջազգային դրության բարդացումը և այլ հանգամանքներ ստիպեցին Ռուսաստանին՝ իր զորքերը ժամանակավորապես դուրս բերել Վրաստանից։ Պարսկական շահ Աղա-Մուհամեդը չհապաղեց օգտվել դրությունից և 1795 թ. գարնանը ներխուժեց Անդրկովկաս, գրավեց Գանձակն ու Երևանը, իսկ սեպտեմբերին՝ Թիֆլիսը, կողոպտելով և հրդեհելով այն։ Այդ արշավանքի զոհը դարձավ սիրո ու ժողովուրդների բարեկամության մեծ երգիչ Սայաթ-Նովան։

Ռուսաստանն անտարբեր չէր կարող մնալ այս դեպքերի նկատմամբ, որոնք սպառնում էին նրա շահերին։ 1796 թ. գարնանը Ռուսաստանը նորից մեծ զորքեր կենտրոնացրեց Անդրկովկասում՝ նախապատրաստվելով արշավանքի Պարսկաստանի դեմ։ Ամռանը ռուսական զորքերը գրավեցին Դերբենդը, Բաքուն, Շամախին, Գանձակը և այլ քաղաքներ։ Սակայն Եկատերինա Երկրորդի մահը, Ֆրանսիայի հետ հարաբերությունների սրումը, Ռուսաստանում գյուղացիական հակաճորտական շարժման ուժեղացումը և այլ պատճառներ կրկին ստիպեցին Ռուսաստանին զորքերը դուրս բերել Անդրկովկասից։ «Ընդհատվեց աշխարհի համար օգտակար գործը»,— ցավով հայտարարեց Հայոց կաթողիկոս Ղուկասը։

Պարսկաստանում դա յուրովի գնահատվեց։ Աղա-Մուհամեդը գտնում էր, որ ժամանակն է վերականգնելու Պարսկաստանի տիրապետությունը Անդրկովկասում։ Իրենց հերթին Անգլիան ու Ֆրանսիան միջոցներ էին ձեռնարկում՝ արգելակելու ռուսների հետագա վերադարձը Անդրկովկաս։ 1797 թվականին Աղա-Մուհամեդը մեծ զորքերով նոր, ավերիչ արշավանք սկսեց Անդրկովկաս, գրավեց Շուշին և պատրաստվում էր խորանալ երկրի ներսը։ Այս անգամ էլ բախտը ժպտաց երկրի տերերին։ Ղարաբաղում Աղա-Մուհամեդ խանն սպանվեց իր իսկ սպասավորների ձեռքով։ Եվ երբ զորքերը տեսան սրի վրա բարձրացրած խանի գլուխը, խուճապահար փախան։

Վրացական նոր թագավոր Գեորգի XII-ի խնդրանքով Պավել I-ը մի գունդ ուղարկեց Վրաստան, որը տեղ հասավ դեկտեմբերին։ Պարսկական նոր Ֆաթալի շահը վախեցավ Ռուսաստանի հետ պատերազմելուց և ետ քաշեց իր զորքերը։ Այս իրադարձությունները վերստին համոզեցին Անդրկովկասի ժողովուրդներին, որ նրանք արևելյան բռնակալների քմահաճույքներից կարող են զերծ մնալ միայն Ռուսաստանի հովանու ներքո։ Եվ, եթե մինչ այդ նրանք Ռուսաստանից հովանավորություն էին աղերսում, ապա այժմ դիմում են նրան՝ իրենց երկրամասը Ռուսաստանին միացնելու խնդրանքով։ XVIII դարի վերջերին Ռուսաստանին միանալու Վրաստանի ձգտումը, որը պսակվեց 1801 թ. սեպտեմբերի 12-ի մանիֆեստով՝ Վրաստանը Ռուսաստանին միացնելու ակտով, խոշորագույն նշանակություն ունեցավ նաև Անդրկովկասի մյուս ժողովուրդների ազատագրական պայքարում։ 1801 թ. սկսվում է նոր շրջան ռուս-անդրկովկասյան հարաբերությունների պատմության մեջ. այն բնորոշվում է երկկողմ ջանքերի ակտիվ միաձուլմամբ, որը հանգեցնում է 1813 թ. Հյուսիսային Ադրբեջանի, իսկ 1828 թ.՝ Արևելյան Հայաստանի միացմանը Ռուսաստանին։

Այսպիսով, չնայած ցարիզմի քաղաքականության նվաճողական բնույթին, Անդրկովկասի միացումը Ռուսաստանին ընդհանրապես պետք է համարել կամավոր, որովհետև այն օսմանյան կայսրության և պարսկական տիրակալների բարբարոսական տիրապետության դեմ մղված երկարատև պայքարի արդասիք էր։ Ռուսաստանը պատերազմներ էր մղում ոչ թե երկրամասի ժողովուրդների, այլ Թուրքիայի ու Պարսկաստանի դեմ, որոնք ստրկացրել էին այդ ժողովուրդներին, զրկել նրանց ազգային կյանքից։ Այդ պատերազմներում հայ և Անդրկովկասի մյուս ժողովուրդների ակտիվ մասնակցությունը Ռուսաստանի դրոշի ներքո, իրավ, նրանց ազատագրական շարժման շարունակությունն էր։

Չնայած նրան, որ ռուս-թուրքական և ռուս-պարսկական պատերազմները երկուստեք զավթողական էին, Անդրկովկասի ժողովուրդների համար իրենց բնույթով ազատագրական էին և դրանք կարելի է դասել այն պատերազմների

շարքին, որոնք, ինչպես գրել է Վ. Ի. Լենինը, «օգուտ են բերել մարդկային զարգացմանը, օգնելով կործանելու առանձնապես վնասակար ու ռեակցիոն հաստատությունները»:

Այսպիսով, հայ ժողովրդի ռուսական կողմնորոշումը պատմականորեն պայմանավորված պրոգրեսիվ երևույթ է: Այն ճիշտ կողմնորոշեց մեր ժողովրդի արևելյան հատվածի հետագա զարգացման ողջ ընթացքը և հանդիսացավ նրա կոնսոլիդացման, ազգային և սոցիալական վերածննդի վճռական գործոնը:

Արևելյան Հայաստանի և ողջ Անդրկովկասի միացումը Ռուսաստանին ամրապնդեց վերջինիս միջազգային դիրքերը, նպաստեց նրա տնտեսական ու քաղաքական զարգացմանը և դրանով իսկ պրոգրեսիվ նշանակություն ունեցավ նաև Ռուսաստանի համար:

Ռուս ժողովրդի բուն ազգային շահերը երբեք ներհակ չեն եղել ցարիզմի կողմից ճնշվող փոքր ազգերի շահերին: «Իսկական ազգային գաղափարները,— նկատել է Ֆ. Էնգելսը,— ...միևնույն ժամանակ միշտ հանդիսանում են նաև իսկական ինտերնացիոնալ գաղափարներ» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 33, стр. 374):

Գաղափարական այդ վեհ դիրքերից է Գերցենը խարազանել ցարիզմի դաղութային քաղաքականությունը: «Բարեբախտաբար,— գրել է նա 1860 թվականին,— Ձմեռային պալատն ամբողջ Ռուսաստանը չէ և նույնիսկ ամբողջ Պետերբուրգը չէ... Ուրիշ Ռուսաստան է բարձրանում՝ պալատից դուրս, ատրճանացուցակից դուրս Ռուսաստանը: Ուրիշ Ռուսաստանը ողջունում է ձեզ՝ որպես իր եղբայրների, ձեզ իր ձեռքն է մեկնում. դե՛, նրան մի՛ շփոթեք այդ բոլոր թաղային պրոպագանդիստների, Աննայի կրծքանշանով ագիտատորների, իսկական պետական ուխտավորների ձեռքերի հետ, որոնք Երուսաղեմ կամ Աթոսի լեռ մեկնելիս, ճանապարհին լինում են և ձեզ մոտ»:

Հայ ժողովուրդն իր բախտն անխախտ կապեց այդ բարձրացող «ուրիշ» Ռուսաստանի հետ, ռուս մեծ ժողովրդի հետ, Ռադիշչևի ու Գերցենի, Չերնիշևսկու ու Պլեխանովի, Գորկու ու Լենինի Ռուսաստանի հետ:

Իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում հայ ժողովրդի արևելյան հատվածի ազգային-ազատագրական շարժումները միաձուլվեցին Ռուսաստանի բանվորական հեղափոխական շարժմանը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը հանդիսացավ XX դարի ամենակարևոր իրադարձությունը, ազգային ու սոցիալական ազատագրություն բերեց ցարիզմի կողմից ճնշված բոլոր ժողովուրդներին, այդ թվում և հայ ժողովրդին:

Սովետական Ռուսաստանը դարձավ աշխարհում բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարի հենարանը: Հայ ժողովուրդը, ամուր հենված այդ Ռուսաստանին, ապահով ու վստահ առաջ է գնում կոմունիզմի ուղիով:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵԳՐԱՑԻԱՆ ԱՐԴԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Տ. Լ. ՔՈՉԱՐՅԱՆ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ արդյունավետության բարձրացման շահերը պահանջում են ամեն կերպ արագացնել գիտության նվաճումների ներդրումն արտադրության մեջ: Որքան արագ ու լրիվ են իրացվում գիտական մտահղացումները, այնքան հաջողությամբ ու արագ է գիտությունը վերածվում արտադրաուժի: Պետք է նշել, որ գիտական գաղափարները դասվում են ամենաարագ «փչացող հումքերի» շարքին և քիչ չեն դեպքերը, երբ մինչև գիտական նորույթն արտադրության մեջ ներդնելը այն արդեն տեխնիկապես հնանում է և մաշվում բարոյապես:

Գիտնականները հաշվարկել են, որ եթե XX դարի առաջին տասնամյակում նոր տեխնիկայի բարոյական մաշվածության ժամանակաշրջանը գնահատվում էր 35—45 տարի, 30-ական թվականներին՝ 20—25, 50-ականին՝ 12—15, ապա 70-ական թվականներին ժամանակակից արտադրությունների համար այն կազմում է մոտ 8—9 տարի:

Հասարակական արտադրության հետագա զարգացման բարձր տեմպերի ապահովումը հնարավոր է իրականացնել միայն այն ժամանակահատվածը կրճատելու միջոցով, որով անցնում են նոր տեխնիկայի ստեղծումն ու ներդրումը: Այդ նկատի ուներ Ա. Ն. Կոսիգինը, երբ ՍՄԿԿ XXV համագումարում ասում էր. «Արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների ավելի արագ ներդրումը մեր արմատական խնդիրներից մեկն է: Առանց դրա էկոնոմիկան արդեն չի կարող հաջողությամբ առաջ ընթանալ ինտենսիվացման և որակի բարձրացման ուղիով» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 192):

Այս իմաստով արտադրության մեջ գիտական նվաճումների արագ ներդրումն ունի երկակի նշանակություն: Նախ, դրանով կրճատվում է այն ժամանակահատվածը, որի դեպքում հասարակության կողմից կատարված ծախսումները կարող են փոխհատուցվել և, երկրորդ, նվազում է գիտական նվաճումների բարոյական մաշվածության հավանականությունը:

«Հետազոտություն—արտադրություն» փուլի տևողության կրճատման և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար անհրաժեշտ է գիտության և արտադրության առավելագույն մերձեցում: Այդ իսկ պատճառով, զարմանալի չէ, որ ի հայտ են գալիս գիտահետազոտական հաստատությունների և արդյունաբերական ձեռնարկությունների ինտեգրացման նորանոր կազմակերպչական ձևեր, որոնք պայմանավորված են նաև արտադրաուժերի զարգացմամբ:

դերը։ Նրանց նախաձեռնությամբ էր, որ ընթացիկ հնգամյակում որոշվեց դադարեցնել հնացած տեսականու արտադրանքի թողարկումը և դրանց փոխարեն թողարկել լույսի նոր աղբյուրներ։

Գիտության և արտադրության ինտեգրացիայի շնորհիվ «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գլխադաս ձեռնարկությունում՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում, միայն տասներորդ հնգամյակի առաջին մեկուկես տարվա ընթացքում յուրացվել է 15 տիպի նոր էլեկտրական մեքենաների արտադրություն։ Այստեղ ներկայումս թողարկվող արտադրանքի մոտ մեկ քառորդը արժանացել է պետական որականիշի։ Գիտատեխնիկական բնույթի միջոցառումները հնարավորություն են ընձեռում լայնորեն արմատավորելու խնայողության ռեժիմը։ Այսպես, օրինակ, միայն անցյալ տարվա առաջին կիսամյակում էլեկտրամեքենաշինարարները խնայել են ավելին քան 900 տոննա սև մետաղ, մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա և այլն։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում էական է կոմպլեքսային գիտահետազոտական ինստիտուտների դերը, որոնք գիտական մշակումներից բացի պատրաստում են նաև փորձնական նմուշներ։ Որպես կանոն, այդ տիպի ինստիտուտներն ունեն իրենց փորձնական արտադրությունները։ Նման պայմաններում հնարավորություն է ընձեռվում յուրաքանչյուր մշակվող թեմայի կենսագործմանը կցել այնքան մասնագետ, որքան անհրաժեշտ է տվյալ աշխատանքն իրականացնելու համար։ Շատ դեպքերում էլ կոմպլեքսային ինստիտուտն իր փորձնական արտադրությունում թողարկում է փոքր սերիաներով արտադրանքներ, որոնք ինչ-որ չափով բավարարում են ժողովրդական տնտեսության պահանջները։ Այդպիսի կոմպլեքսային գիտական հաստատության օրինակ է Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, որը երկրի համանման կազմակերպությունների մեջ առաջատարներից է։

Գիտաարտադրական կոմպլեքսների խմբին են պատկանում նաև ուսումնաարտադրական միավորումները, որոնք կազմակերպվում են բարձրագույն ուսումնական հաստատությունների բազայի վրա։ Նման միավորումներում որպես գլխադաս կազմակերպություն հանդես է գալիս բարձրագույն դպրոցը, կոմպլեքսն իր մեջ ընդգրկում է նաև գիտահետազոտական ինստիտուտներ, կոնստրուկտորական բյուրոներ, ինչպես նաև փորձնական արտադրություն։

Մեր հանրապետությունում բուհական գիտության և արտադրության դաշինքի լավ ավանդույթներ ունեն Երևանի պետական համալսարանը և Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտը, որոնք կատարում են հանրապետության ամբողջ բուհական գիտական հետազոտությունների մոտ $2/3$-ը։ Այս երկու ուսումնական հաստատությունները համագործակցում են ո՛չ միայն արդյունաբերական ձեռնարկությունների, այլև ճյուղային և ակադեմիական համակարգի գիտահետազոտական ինստիտուտների հետ։ Պետք է նշել, որ հանրապետության բուհերի կատարած գիտահետազոտական աշխատանքների 80 տոկոսից ավելին իրագործվում է անմիջականորեն բուհի և արդյունաբերական ձեռնարկությունների միջև կնքված տնտեսական պայմանագրերով։

Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ մեր բուհերում կատարվող գիտահետազոտական աշխատանքները շատ դեպքերում փոքրածավալ են, հաճախ էլ կրկնում են իրար։ Այդ իսկ պատճառով Երևանի պետական համալսարանի և Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի մշակած 800 թեմաներից յուրաքանչյուր տարի ժողովրդական տնտեսությունում ներդրվում է 20-ից ոչ ավելին։ Միաժամանակ, բուհերի գիտահետազոտական աշխատանքների պլաններում նախատեսվում են այնպիսի թեմաներ, որոնց հետազոտությունները դադարեցված են կամ էլ հրատապ չեն։ Մեր կարծիքով, այդ կարգի թերությունները վերացնելու համար պետք է բարձրացվի հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության դերը, այսինքն՝ տնտեսական պայմանագրերը պետք է կնքվեն մինիստրության միջոցով, որը հնարավորություն կընձեռի խուսափելու թեմա-



ների կրկնությունից, և պատվիրատուները լիարժեք ինֆորմացիա կունենան, թե որ բուհը կարող է կատարել այս կամ այն աշխատանքը։

«Հետազոտություն—արտադրություն» փուլի տևողության կրճատման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման բնագավառում մեծ է լավ կազմակերպված գիտաարտադրական միավորումների դերը։ Մեր երկրում դրանք կազմակերպվել են՝ սկսած 1967 թվականից, նախ քիմիական և նավթային մեքենաշինության արդյունաբերության մեջ, իսկ հետագայում նաև արդյունաբերության մյուս ճյուղերում։ Այժմ դրանց թիվը հասնում է 138-ի։

Գիտաարտադրական միավորումը ներառում է գիտահետազոտական ինստիտուտ, նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպություններ, փորձնաարտադրական բազան, շեֆ-մոնտաժային կազմակերպություն, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություններ, ուր գլխավոր կազմակերպչի և ղեկավարի ֆունկցիան կատարում է գիտահետազոտական ինստիտուտը, իրեն ենթարկելով մյուս բոլոր ստորաբաժանումները։

Գիտաարտադրական միավորումը գիտական կազմակերպությունների և արդյունաբերական ձեռնարկությունների սոսկ մեխանիկական միացում չէ։ Դրա ստորաբաժանումները փոխկապակցված, փոխհամաձայնեցված են և ծառայում են մեկ ընդհանուր նպատակի՝ նոր տեխնիկայի ստեղծմանն ու յուրացմանը՝ աշխատանքի գիտական բաժանման, մասնագիտացման և կոոպերացման հիման վրա։

Նոր տեխնիկայի ստեղծման բնագավառում գիտաարտադրական միավորումները չմիավորված կազմակերպությունների նկատմամբ ունեն զգալի առավելություններ։ Դրանցում միասնական են հետազոտական, մշակման, նախագծակոնստրուկտորական և տեխնոլոգիական աշխատանքների կազմակերպումն ու կառավարումը, որի շնորհիվ այստեղ խիստ վերանում են տարբեր ստորաբաժանումների միջև տեխնիկական առաջադրանքների և փորձնական աշխատանքների կատարման շուրջ համաձայնության գալու ավելորդ քաշքշուկները։

Գիտաարտադրական միավորումում թեմայի հետազոտման, նախագծման, մշակման և մյուս աշխատանքներն իրականացնում են կոմպլեքսային բրիգադները, որոնք բաղկացած են հետազոտողներից, տեխնոլոգներից, կոնստրուկտորներից, նախագծողներից և այլ մասնագետներից։ Բրիգադի ղեկավարները հետևում են թեմայի կատարման աշխատանքներին՝ «Հետազոտություն—արտադրություն» ամբողջ փուլի ընթացքում կոորդինացնելով տվյալ թեմայի կատարմանը մասնակցող բոլոր ստորաբաժանումների գործունեությունը։

Պարզ է, որ աշխատանքի կազմակերպման նման պայմաններում հարկ չի լինի ավելորդ ժամանակ վատնելու զուտ տեխնիկական հարցերի լուծման վրա։ Օրինակ, եթե խոշոր օդաբաշխիչ հարմարանքների ստեղծման պրոցեսում տարբեր կազմակերպությունների հետ միայն համաձայնության գալու համար նախկինում պահանջվում էր, միջին հաշվով, 3 տարի, ապա ներկայումս Բալաշիխայի «Կրիոգենմաշ» գիտաարտադրական միավորման պայմաններում օդաբաշխիչ հարմարանքների ստեղծման փուլի ամբողջ տևողությունը կազմում է 2—3 տարի։ Այսպիսով, խիստ վերացել են համաձայնության գալու համար նախկինում անխուսափելի հարկադիր պարապուրդները։

Գիտաարտադրական միավորումում աշխատանքների առանձին փուլերի համատեղումը և զուգահեռաբար կատարումը հնարավորություն են ընձեռում էապես կրճատելու «հետազոտություն—արտադրություն» փուլի տևողությունը։ Այսպես, եթե նախկինում սննդարդյունաբերության մեջ նոր տեխնիկան ստեղծվում և յուրացվում էր 2—3 տարվա ընթացքում, ապա այժմ համանման աշխատանքները Օդեսայի «Պիշչեպրոմավտոմատիկա» գիտաարտադրական միավորումը կատարում է 1—1,5 տարում, «Էլեկտրաապարատը» նոր արտադրանքի մշակման, յուրացման և ներդրման պրոցեսը 5—7 տարուց հասցրել է մինչև 2,5—3 տարվա։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ գիտաարտադրական միա-

վորումներում ո՛չ միայն կրճատվում է «հետազոտություն—արտադրություն» փուլի տևողությունը, այլև բարձրանում է թողարկվող արտադրանքի որակը, կապես աճում արտադրության մեջ գիտական մշակումների ներդրումից ստացված տնտեսական արդյունքը և բարելավվում են տեխնիկատնտեսական գրեթե բոլոր ցուցանիշները:

Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության համակարգում 1976 թվականին կազմակերպվեց մեր հանրապետությունում առաջին գիտաարտադրական միավորումը: Այն ստեղծվեց կոնստրուկտորատեխնոլոգիական ու նախագծային ինստիտուտի, աշխատանքի ու արտադրության կառավարման գիտական կազմակերպման կենտրոնի, ժողովրդական գեղարվեստական արդյունագործությունների հատուկ գեղարվեստա-կոնստրուկտորական բյուրոյի և Երևանի տեխնոլոգիական սարքավորումների փորձնական գործարանի բազայի վրա: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այստեղ միավորման ստեղծումից հետո գիտական մշակումների ավելի քան 90 տոկոսը ժամանակին ներդրվում է արտադրության մեջ: Դրա հետ մեկտեղ «հետազոտություն—արտադրություն» փուլի տևողությունը կրճատվել է 1,5—2 անգամ, նույնքան անգամ ավելացել է տնտեսության մեջ մշակումների ներդրումից ստացվող եկամուտը: Բացի դրանից, տեղական արդյունաբերության գիտաարտադրական միավորումը գիտատեխնիկական բնույթի օգնություն է ցույց տալիս հանրապետության ավելի քան 30 արդյունաբերական ձեռնարկությունների՝ կապված արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման հետ:

Այս ամենը վկայում է, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում կազմակերպական լավագույն ձևերից մեկը գիտաարտադրական միավորումների ստեղծումն է, որոնք մի շարք անժխտելի առավելություններ ունեն նոր տեխնիկայի ստեղծման, յուրացման և ներդրման բնագավառում: Գիտաարտադրական միավորումներում անհամեմատ արագ են լուծվում կարևոր նշանակություն ունեցող տեխնիկական պրոբլեմները, հաղթահարվում «գիտություն—արտադրություն» ճանապարհին ընկած խոչընդոտները: Հանրապետության ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության, հաստոցաշինության, գործիքաշինության ղեկավարները պետք է ակտիվորեն ձեռնամուխ լինեն գիտաարտադրական միավորումների կազմակերպմանը:

Սոցիալիստական տնտեսության զարգացման արդի փուլում առաջին պլանի վրա են դրվում արտադրության կազմակերպման որակական գործոնները: Գիտության ու արտադրության ինտեգրացիան այն կարևորագույն ազդակներից է, որը խթանում է գիտատեխնիկական առաջընթացը, նպաստում արտադրության որակական ցուցանիշների բարելավմանը:

# ԽՆԱՄՔՈՎ ՊԱՀՊԱՆԵԼ ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՖՈՆԴԸ

Է. Պ. ՇԱՀԻՆՅԱՆ
Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի դեպուտատ, ինժեներ

ԱՇԽԱՐՀՈՒՄ ՈՉ ՄԻ ԵՐԿԻՐ այնպիսի լայն թափով չի ձեռնարկել բնակարանային շինարարություն, ինչպես Սովետական Միությունը: Միայն իններորդ հնգամյակի տարիներին կառուցվել են 544 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, որի շնորհիվ բարելավվել են 56 մլն մարդու բնակարանային պայմանները:

Տասներորդ հնգամյակի պլանով նախատեսված է շահագործման հանձնել 545—550 մլն քմ ընդհանուր բնակելի տարածություն: Բարելավվում են տների որակական կազմը, հատկապես դրանց ճարտարապետական ձևավորումն ու բնակարանների հարմարավետությունը:

Բնակարանային շինարարության լայն ծրագիր է իրականացվում նաև Երևանում: Նախորդ հնգամյակի տարիներին քաղաքում կառուցվել են 2,3 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, ավելի քան 41 հազար ընտանիքներ ստացել են նոր բարեկարգ բնակարաններ:

Այդ աշխատանքները նոր թափ են ստացել ընթացիկ հնգամյակում: Երևան քաղաքի բնակարանային-կոմունալ շինարարության համար նախատեսված են մոտ 400 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ: Այդ ժամանակամիջոցում ծրագրվում է շահագործման հանձնել 2,35 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր: Ներկայումս քաղաքի բնակարանային ֆոնդը, մասնավոր սեկտորի հետ մեկտեղ, կազմում է 9 մլն 860 հազար քմ: Նախորդ հնգամյակների ընթացքում էականորեն նորացվել և կառուցվածքով փոփոխվել է Երևանի պետական (հանրայնացված) բնակելի ֆոնդը, որը, 1977 թվականի հուլիսի 1-ի դրությամբ, կազմում է մոտ ութ միլիոն քմ. վերջինիս ավելի քան 90 տոկոսն ապահովված է կոմունալ հարմարություններով:

Քաղաքի ամենակարևոր և գլխավոր հարստության՝ բնակարանային ֆոնդի աճի, դրա որակական կազմի փոփոխության, հետևաբար ավելի շատ ինժեներական սարքավորումներով հագեցվածության պայմաններում տեղական իշխանությունները պետք է օրինակելիորեն պահպանեն ու շահագործեն բնակարանային ֆոնդը: Այդ նպատակով հսկայական միջոցներ են ծախսվում: Ակներև է, որ վերջին տարիներին ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային և շրջանային սովետների գործկոմներն սկսել են ավելի արդյունավետ զբաղվել բնակելի ֆոնդի շահագործման և պահպանման խնդրով:

Այս բնագավառում տարվող աշխատանքի մակարդակի բարձրացման նպատակով Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը 1976 թ. ապրիլին քննարկեց՝ «Երևան քաղաքում բնակարանային ֆոնդի շահագործման և պահպանման ուղղությամբ օրենսդրական պահանջների կատարման վիճակի մասին» հարցը և ընդունեց համապատասխան որոշում: Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետը և գործկոմը նույնպես քննարկեցին այդ

հարցը և ուղիներ նշեցին, որոնց իրականացմամբ որոշակի բեկում տեղի ունեցավ բնակարանային ֆոնդի շահագործման ու պահպանման գործում։

Անցած երկու տարիների ընթացքում հիմնովին նորոգվել են մոտ 600 բնակելի տներ, 154 բնակելի տների բակային փայտե պատշգամբները փոխարինվել են երկաթ-բետոնով, նորոգվել են 185 բնակելի շենքերի տանիքներ, բարեկարգվել 456 բակեր և այլն։ Քաղսովետը կատարեց 1977 թ. բնակելի ֆոնդի հիմնական նորոգման պլանը։ Հիմնովին նորոգվեցին 289 կաթսայատներ ու ջերմատար ցանցեր, 130 բնակելի տներում վերանորոգվեցին ներքին ցանցերը, նախկինում շահագործման հանձնված 238 տներում ապահովվեց տաք ջրամատակարարումը։ Մի շարք բնակելի շենքերում վերացվեցին նկուղներում տեղավորված մանր կաթսայատները։

Քաղաքի բարձրաբերձ տների վերելակային սպասարկումը բարելավելու, տեխնիկական սպասարկումը բարձրացնելու նպատակով կազմակերպվել են կենտրոնական դիսպետչերական 3 նոր կետեր։ Դիսպետչերական գործող կետերին լրացուցիչ միացվել են 400 վերելակներ՝ շուրջօրյա շահագործմամբ։

Սովետական շրջանում կուսակցության շրջկոմի օգնությամբ դաստիարակչական աշխատանք է տարվում բնակարանային ֆոնդի պահպանման համար։ Շրջանի պետական ֆոնդի շենքերի բնակիչների ընդհանուր ժողովներում ընտրվել են 558 տնային կոմիտեներ, ստեղծվել են 26 տեղամասային խորհուրդներ։ Տեղամասային խորհուրդների գործունեությունը ղեկավարում ու կոորդինացնում է շրջանային հանձնաժողովը։ Բացի դրանից, շրջանում գործում են 15 թաղային կոմիտեներ՝ ընկերական դատարաններով։ Շրջանում բնակչության հետ աշխատանքներ տանող 700-ից ավելի օղակներում ընդգրկված են 4.500 ակտիվիստներ։ Այստեղ սիստեմատիկաբար կազմակերպվում են «Օրինակելի շենքի համար», «Լավագույն տեղամասային խորհուրդ», «Օրինակելի բակ» և այլ նշանաբաններով մրցույթներ։

Բնակարանային տնտեսության մարմինների աշխատանքում զգալի է հասարակայնության օգնությունը։ Բնակիչների անմիջական մասնակցությամբ քաղաքի բնակելի թաղամասերի տերիտորիաներում վերջին երկու տարում 26 հազար տնկիներ են արկանված, կանաչապատվել և ստեղծվել են շատ զալոններ, քաղաք է բերվել երկու հազար խորանարդ մետր բուսահող, կազմակերպվել և անցկացվել են բակերի մաքրման, բարեկարգման շաբաթօրյակներ ու միամսյակներ։

Սակայն բնակելի ֆոնդի շահագործման ու պահպանման ներկայիս մակարդակը շարունակում է խիստ ետ մնալ բնակարանային շինարարության տեմպերից, բնակարանային և կոմունալ-կենցաղային ծառայությունների նկատմամբ բնակչության մշտապես աճող պահանջներից։ Այդ մասին բազմիցս նշվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Երևանի քաղկոմի պլենումներում, քաղաքային ու շրջանային սովետների նստաշրջաններում։

Ներկայումս Երևանում կան մեծ թվով բնակելի շենքեր, որտեղ սահմանված ժամկետներում ընթացիկ և հիմնական նորոգումներ չեն կատարվում։ Անհրաժեշտ է անհապաղ վերանորոգել շատ շենքերի տանիքները, ջրհորդանները, վերացնել աստիճանավանդակների վնասվածքները, վերականգնել մուտքերի դռներն ու լուսամուտները, փոխել անսարք ջրատար և կոյուղու խողովակները, ջեռուցման մարտկոցները, ջերմացանցերը և այլն։ Դեռևս ամենուր անհրաժեշտ հոգածություն չի ցուցաբերվում բնակելի շենքերի շահագործման, դրանց պահպանման վիճակը բարելավելու նկատմամբ։ Հայտնի է, որ բնակելի ֆոնդի երկարակեցությանն ու պահպանմանը նպաստող գործոններից մեկը ժամանակին կատարվող հիմնական նորոգումն է։ Սակայն դրան դեռևս պատշաճ ուշադրություն չի հատկացվում, տրամադրվող միջոցները լիովին չեն օգտագործվում։

Բնորոշ է, որ անցյալ հնգամյակում շրջանային սովետների գործկոմների տնօրինության տակ գտնվող բնակելի ֆոնդի հիմնական նորոգման ողջ պլանը (շենքերի թվով) կատարվել է 95,6, իսկ դրամային առումով՝ 98,5 տոկոսով։ Թեև 1976 թ. քաղսովետի բնակելի ֆոնդի կապիտալ վերանորոգման



պլանը կատարվել է 101,2 տոկոսով, սակայն Սպանդարյանի շրջանում այն կազմել է 89,6, Օրջոնիկիձեի շրջանում՝ 96,3, 26 կոմիսարների անվան շրջանում՝ 97,9 տոկոս։ Իրավիճակն անմխիթար էր նաև անցած տարի։

Փաստ է նաև այն, որ առայսօր չկան բնակելի շենքերի հիմնական նորոգման հեռանկարային պլաններ։ Հիմնական նորոգման, նախագծման աշխատանքների տիտղոսացուցակները կազմվում են մակերեսային դիտումների կամ, շատ դեպքերում, բնակիչների գանգատների հիման վրա։ Նորոգելի ծավալների որոշումը հաճախ հանձնարարվում է տեխնիկական համապատասխան կրթություն չունեցող անձանց, որոնց կազմած կատարվելիք աշխատանքների ցանկում կան զգալի թերություններ և սխալներ։

Շենքերի կոմպլեքսային անհրաժեշտ աշխատանքներ չընդգրկող նորոգումները կատարվում են ցածր որակով, որի հետևանքով խախտվում են միջնորոգումների ժամկետները։ Անորակ վերանորոգումների և անբավարար շահագործման հետևանքով միայն Սպանդարյանի շրջանում վերջին 10—15 տարիների ընթացքում կառուցված մի շարք շենքեր կարիք ունեն արմատական բարեկարգման։ Այս առումով վիճակը գոհացուցիչ չէ նաև մյուս շրջաններում։ Սա հետևանք է, առաջին հերթին, այն բանի, որ բնակարանների պահպանման և նորոգման համար առանձնացված միջոցները հաճախ օգտագործվում են այլ նպատակներով։ Մինչ Շահումյանի շրջանում վթարային շենքերի հիմնական նորոգման համար 1976 թ. հատկացված մոտ 300 հազար ռուբլին չօգտագործվեց՝ նախագծերը ժամանակին պատրաստ չլինելու պատճառով։

Կոմպլեքսային հիմնական նորոգում չկատարելու, շենքերի կոնստրուկցիաների վերանորոգման աշխատանքների պլանները թերակատարելու պատճառներից մեկն էլ մշտական մանևրային ֆոնդ չունենալն է, որի պատճառով այժմ քաղաքում 100-ից ավելի վթարային բնակելի շենքեր չեն վերանորոգվում։ Պետք է անհրաժեշտ պայմաններ ստեղծել և բոլոր միջոցները ձեռնարկել, որպեսզի կարգավորվի հիմնական նորոգման հատկացումների արդյունավետ օգտագործումը, բարձրացվի նախագծային և շինարարական-վերանորոգման կազմակերպությունների պատասխանատվությունը՝ աշխատանքները բարձր որակով և ժամանակին կատարելու համար։

Բնակելի ֆոնդի հիմնական վերանորոգման աշխատանքների որակով և ժամանակին կատարումը մեծ չափով պայմանավորված է նախագծանախահաշվային փաստաթղթերի մշակմամբ։ Երևանի բնակելի ֆոնդի հիմնական նորոգման նախագծանախահաշվային աշխատանքները կատարում է քաղսովետի գործկոմի բնակարանային տնտեսության վարչության նախագծակոնստրուկտորական բյուրոն, որի հնարավորությունները դեռևս խիստ սահմանափակ են։

Հայտնի է, որ Լենինգրադում, Կիևում, Մինսկում, Ռիգայում բնակելի ֆոնդի հետազոտման ողջ աշխատանքները, շենքերի քայքայվածության աստիճանի, կատարելիք հիմնական նորոգման ծավալների որոշումը, տեխնիկական լուծումները վաղուց իրականացնում են այդ նպատակով ստեղծված նախագծային ինստիտուտները։ Հենց նրանց ուժերով են կազմվում հիմնական նորոգման հեռանկարային և տարեկան պլանները, սահմանվում դրանց կատարման ժամկետները։

Երևանում նոր բնակելի շենքերի շինարարությունը հետզհետե ավելի է դրվում ինդուստրիալ հիմքերի վրա։ Այժմ շենքերի մեծ մասը կառուցվում է նոր կոնստրուկցիաներով, հարմարավետ բնակարաններով և ճարտարապետական լավագույն ձևավորումներով։ Նախագծողներն ու ճարտարապետները բնակելի թաղամասերի և միկրոշրջանների կառուցապատման նոր, հետաքրքրական լուծումներ են գտել։ Բայց մենք դեռևս չենք հասել այն բանին, որ շինմոնտաժային, հատկապես բնակարանների ներքին հարդարման աշխատանքները բարձրորակ կատարվեն և գոհացնեն նորաբնակներին։ Այդ հետևանք է այն բանի, որ հաճախ շրջանային սովետների գործկոմների և պատվիրատու կազմակերպությունների համաձայնությամբ բնակելի շենքերը գործարկվում են զգալի թերություններով, որոնք դառնում են բնակարանա-

յին տնտեսությունների ժառանգությունը։ Նման շենքերը նորմալ նախագծային տեսքի բերելու համար առաջին իսկ տարվանից հարկ է լինում ներդնել զգալի ֆինանսական, աշխատանքային միջոցներ և նյութական ռեսուրսներ։ Անհրաժեշտ է, որ համապատասխան կազմակերպությունները ուժեղացնեն տեխնիկական հսկողությունը շինմոնտաժային աշխատանքների կատարման գործում, որպեսզի բնակելի շենքերն ընդունվեն շինարարական նորմաների ու կանոնների համաձայն։

Դեռևս անորակ են կազմվում նախագծերը։ Նոր միկրոշրջանների կառուցապատման նախագծերում չի նախատեսվում շահագործման տեխնիկական ու վթարային ծառայությունների տեղադրում։ Լուծված չեն մի շարք շենքերի անջրանցիկ ծածկերի, ջեռուցման ու տաք ջրամատակարարման վթարների հետևանքների վերացման հարցերը։ Բարձրաբերձ որոշ շենքերի աստիճանավանդակների հարթակներում աղբատարների տեղադրումը, նկուղային և կիսանկուղային հարկերում աղբ թափելու վայրերի ստեղծումը մեծ անհարմարություններ են հարուցում։ Շատ բնակելի շենքերի նախագծերում անհրաժեշտ հարմարանքներ չեն նախատեսվում կենցաղային մնացուկները հեռացնելու համար։ Դեռևս շարունակվում է նկուղային շենքերում ջրամբարձ պոմպերի նախագծումն ու կառուցումը։

Շատ բնակիչներ, անտեսելով շենքերի կոնստրուկտիվ հնարավորությունները, սկսում են իրենց ճաշակով վերակառուցել բնակարանները, չմտածելով ճարտարապետական խափանումների մասին։ Այս գործում առանձին բնակիչների «ճարտարապետական հնարանքը» դուրս է գալիս չափի սահմաններից։ Նրանցից ոմանց հաջողվել է ապակեպատ ծածկապատշգամբների ու սենյակների վերածել շենքերի սյունակապ և ճակատային փոքրիկ պատշգամբները։ Պետք է խոստովանել, որ քաղաքի բնակելի շենքերում ապօրինի վերակառուցումները տակավին զերծ են շահագործող կազմակերպությունների, վարչական մարմինների վերահսկողությունից։ Զարմանալի է, որ բնակելի շենքերի որոշ բակեր ինքնագլուխ ցանկապատում և վերածում են տնամերձերի այն դեպքում, երբ վերջին շրջանում քաղաքում վերացվել են մոտ 2000 ցանկապատեր և անձնական օգտագործման տեղամասեր։

Երևանը շեշտված ինքնատիպ քաղաք է և չպետք է թույլ տալ նրա պատկերի որևէ աղավաղում։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ քաղաքի հին ու նոր թաղամասերը շրջապատվեն կանաչ տարածություններով, ստեղծվի մարդու և բնության միասնական անսամբլ՝ առանց որևէ վերափոխման, անճաշակության։

Երևանում, 1978 թվականի հունվարի 1-ի դրությամբ, կան մոտ 300 կոոպերատիվ բնակելի շենքեր՝ 800 հազար քմ ընդհանուր տարածությամբ։ Սակայն դեռևս 70 կոոպերատիվ շենքերի շահագործումը կատարվում է իրենց՝ բնակշինկոոպերատիվների ուժերով, ընդ որում դրանց բնակիչների մի մասը օգտվելով կոմունալ բոլոր ծառայություններից կամ ամենևին չի հատուցում այդ ծախսերը, կամ հատուցում է սահմանվածից պակաս։ Որոշ կոոպերատիվ շենքերում փայատերերը դեռևս բնակվում են առանց օրդերների։ Նրանցից շատերը սպասարկման վարձ չեն վճարում, շինբանկի վարկի պարտքերը չեն մարում, նման փայատերերից ոմանք օրենսդրության և կոոպերատիվների կանոնադրական պահանջների չարամիտ խախտողներ են։ Ցավոք, ոչ բոլոր շրջանային սովետների գործկոմները նրանց նկատմամբ ներգործման անհրաժեշտ միջոցներ են կիրառում։

Վերջին տարիներս զգալիորեն բարելավվել է խմելու ջրի մատակարարումը Երևանում։ Ներկայումս քաղաքն ստանում է վայրկյանում 8.500 լիտր խմելու ջուր կամ երեք հազար 600 լիտրով ավելի, քան իններորդ հնգամյակի սկզբում։ Քաղաքի ջրամատակարարման գլխավոր սխեմային համապատասխան, ընդլայնվել են կարգավորիչ ջրամբարների ծավալները, որոշակի աշխատանք է կատարվել ջրմուղի ցանցի գոտիավորման նպատակով։ Շատ բնակելի թաղամասերում վերացվել են բնակելի շենքերի ջրամատակարարման գրաֆիկները, հաստատվել է տասներորդ հնգամյակում քաղաքի ջրամատակարարման զարգացման հեռանկարային պլանը։



Փաստ է սակայն, որ Շահումյանի, Սովետականի, 26 կոմիսարների անվան շրջանների որոշ թաղամասերում ջրամատակարարումը գրաֆիկներով է իրականացվում։ Որոշ բարձրաբերձ շենքերի վերին հարկերում ջուրն ընդհատումներով և գրաֆիկների խախտումներով է տրվում։ Վատ է կազմակերպված ջրի կորուստների ու հոսքի վերացումը։ Ջրատար խողովակներից, հատկապես բնակելի շենքերի ներքին ցանցերից ու սանտեխնիկական սարքավորումներից, կաթսայատներից և ջերմացանցերից վայրկյանում կորչում է ավելի քան 500 լիտր ջուր։

Շրջսովետներն արդյունավետ չեն օգտագործում բնակելի շենքերի խմելու ջրի մատակարարման ներքին ցանցերը վերանորոգելու և ջրի հոսքը վերացնելու համար առանձնացվող միջոցները։ Բնակշահագործման գրասենյակները և տնային կառավարչությունները լրջորեն չեն զբաղվում բնակելի շենքերի ջրատար ծորակներից և սանհանգույցներից ջրի կորուստները վերացնելու գործով։ Ավելի վատ է վիճակը մասնավոր սեկտորում։ Անհրաժեշտ է ձեռնարկել բոլոր միջոցները՝ վերացնելու ջրի կորուստները. միայն այդ դեպքում հնարավոր կլինի լիովին բավարարել բնակչության խմելու ջրի պահանջները։

Վատ է վիճակը բնակելի ֆոնդի ջերմամատակարարման և տաք ջրամատակարարման ասպարեզում։ Քաղաքի բնակելի և հասարակական շենքերի մի մասը ներկայումս ջեռուցում է ստանում միայն վեց խոշոր կենտրոնական կաթսայատներից։ Մնացած ջերմամատակարարումը կատարվում է մանր կաթսայատներից։ Բազմաթիվ սակավազոր կաթսայատներ իրենց 700-ից ավելի ծխնելույզներով ո՛չ միայն չափազանց կեղտոտում են մթնոլորտը, փչացնում քաղաքի ճարտարապետական տեսքը, այլև զգալիորեն դժվարացնում են դրանց շահագործումը։

Թեև իններորդ հնգամյակի ընթացքում վերացվել են 122 մանր կաթսայատներ, որոնց մեծ մասը տեղադրված էր բնակելի շենքերի նկուղային հարկերում, այնուամենայնիվ բնակարանային տնտեսության 123 կաթսայատներ դեռևս գտնվում են նախկին վիճակում։

Կաթսայատների և ջերմացանցերի բազմաքանակությունը, դրանց մեծ մասի տեխնիկական անբավարար վիճակը, սպասարկման ցածր մակարդակը հնարավորություն չեն ընձեռում պատշաճ ձևով վարելու այդ տնտեսությունը։

Յուրաքանչյուր տարի զգալի միջոցներ են ծախսվում կաթսայատների և ջերմացանցերի հիմնական և ընթացիկ վերանորոգումների վրա։ Սակայն այդ աշխատանքների անորակության պատճառով վերանորոգված օբյեկտները չեն ապահովում միջնորոգումային ժամկետները։

Անհրաժեշտ է, որ բնակարանային տնտեսության վարչությունը և ջերմային տնտեսության միավորումը ձեռնարկեն ջերմային տնտեսության տեխնիկական շահագործման մակարդակի և սպասարկող անձնակազմի որակի բարձրացման կոնկրետ միջոցներ, հասնեն արտադրվող ջերմության ինքնարժեքի նվազեցման, գազի, էլեկտրաէներգիայի և խմելաջրի խնայողաբար ծախսման, ապահովեն կաթսայատների և ջերմացանցերի անվտանգ շահագործումը։

Հանրապետության կառավարության վերջերս ընդունած որոշմամբ կոնկրետ միջոցառումներ են նախատեսված բնակարանային ֆոնդի շահագործումն ու պահպանումը բարելավելու նպատակով։

Բնակարանային տնտեսությունը սոցիալիստական սեփականության կարևոր տեղամասերից է, որի պահպանման ու զարգացման համար պահանջվում են կարող կադրեր, բանիմաց մասնագետներ։ Հետևողական, գիտականորեն հիմնավորված աշխատանքով միայն հնարավոր է լուծել հասարակական կյանքի այդ բնագավառի սոցիալ-տնտեսական խնդիրները, բավարարել սովետական մարդկանց կենսական պահանջմունքները։

ԵՏՐ ՄԱՐԴՈՒ
# ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

## ԹԵ՛ ԿԵՆՍԱԿԱՆ, ԹԵ՛ ԼՈՒԾԵԼԻ ԽՆԴԻՐՆԵՐ

(ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՇՈՒՐՋ)

**ԱԴԱ ԲԱՍԿԻՆԱ**

ՎԱՂՈՒՑ Է, ԻՆՉ ՄԱՐԴԻԿ վիճում են՝ հնարավո՞ր է կամ չի՞ կարելի արդյոք երեխային, դեռահասին, պատանուն նախապատրաստել ընտանեկան կյանքին: Ոմանք ասում են՝ դաստիարակեք պարզապես բարի, կենսուրախ, պարտքի բարձր գիտակցությամբ մարդիկ և ահա ձեզ կատարյալ, պատրաստի ամուսիններ: Մյուսներն առարկում են՝ մի՞թե ամուսնալուծվողների թվում քիչ են հենց այդպիսի խելացի, լավ մարդիկ: Ո՛չ, մարդու հոգևոր աշխարհը պետք է հարստացնել այնպիսի հատկանիշներով, որոնք պահանջվում են հենց ամուսնության համար, միմիայն ընտանեկան կյանքում: Մինչդեռ ընդդիմախոսներն ասում են. իսկ ինչո՞ւ երիտասարդի, առավել ևս դեռահասի առջև նախապես բացենք հասուն կյանքի բարդ աշխարհը, որը հենց ինքն է բանալու: Բայց մի՞թե ավելի լավ կլինի, եթե նա այդ աշխարհը մտնի կուրորեն ու նոր միայն սովորի այբուբենը, փոխանակ գրագետ ու հասունացած՝ կարդա կյանքի գիրքը: Այսպես են մտածում ընտանեկան հատուկ նախապատրաստման կողմնակիցները:

Այժմ անվիճելի է, որ նահապետական ընտանիքում կարգ ու կանոնը պահպանվում էր ամուսնու և ընդհանրապես ավագ տղամարդու անառարկելի հեղինակությամբ: Ամուսինն ու կինը պետք է բազմապատկեին ընտանիքի ունեցվածքը. սա էր նրանց հիմնական պարտականությունը: Կյանքի տնտեսական-կենցաղային կողմը կարևորագույն տեղ էր գրավում ամուսնության մեջ: Երեխաների դաստիարակության հետ մեկտեղ այդ էր ընտանեկան կյանքի գլխավոր միտումը: Տղամարդու և կնոջ, ծնողների ու զավակների, երիտասարդ ամուսինների ու ծերերի փոխհարաբերությունները չափազանց աննշան տեղ էին գրավում: Այժմ տեսնենք, թե ինչպիսին է ժամանակակից ընտանիքը:

Պրոֆեսոր Ա. Գ. Խարչևն այն բնորոշում է իբրև «ամուսնության ու ազգակցության վրա հիմնված սոցիալական մի փոքր խումբ, որի անդամները շաղկապված են համատեղ կյանքով ու փոխօգնությամբ»: Սակայն նա հատկապես շեշտում է սովետական ընտանիքի առանձնահատկությունը— հոգեկան փոխօգնության և միմյանց նկատմամբ հոգեկան շահագրգռվածության անհրաժեշտությունը: Բնականաբար, հոգեհարազատությունն ընտանիքի իդեալն է և մեր օրերում: Սոցիալիզմի շնորհիվ է, որ առավել բարենպաստ պայմաններ են ստեղծվել նման փոխհարաբերությունների համար, որոնք հիմնված են անկեղծ զգացմունքների, անհաշվենկատ ընդհանուր շահերի վրա:

Աղջիկը փեսացու ընտրելիս ամենից քիչ է մտածում այն մասին, թե վերջինս պետք է խնամի երիտասարդ կնոջը, որովհետև ինքը դեռ սովորում է, մասնագիտություն է ստանում կամ արդեն աշխատում է: Ամուսնանալու մտադրություն ունեցող երիտասարդին քիչ է հետաքրքրում հարսնացուի օժիտը: Իհարկե, չի կարելի ասել, թե դրամը ոչ մի դեր չի խաղում երիտասարդների կյանքում: Բայց նրանց համար ամենևին էլ նույնը չէ, թե ինչ ճանապարհով են վաստակում այն: Եվ շատ հաճախ երիտասարդ ամուսինները համաձայնում են պակաս ապահով գոյության, թեկուզ միայն կրթություն ստանալու, առավել որակավորված աշխատանքով զբաղվելու համար:

Այլ խոսքով՝ կյանքի հոգևոր էությունը, ինչպես և բավարարվածությունն աշխատանքով, ստեղծագործելու անհրաժեշտությունը շատ ավելի մեծ դեր են խաղում մեր երիտասարդ ամուսինների համար, քան այնտեղ, ուր մարդու դերը հասարակության մեջ, ցավոք, պայմանավորվում է դրամի իշխանությամբ: Այսպիսով, մեր երիտասարդ ամուսինները բավարար հիմքեր ունեն հոգեկան զարգացման, ձգտումների համար: Բայց այս դեպքում իսկ միշտ չէ, որ նրանց հաջողվում է ընտանեկան կյանքում ստեղծել երջանկացնող, ուրախ, հաճելի մթնոլորտ: Դրա համար անհրաժեշտ է աստիճանաբար հարթել սովորությունների, պատկերացումների, արժույթների մերձեցման իրոք շատ դըժվարին ուղին: Իսկ այդ, իր հերթին, մոսկվացի սոցիոլոգ Օ. Իվանովի արտահայտությամբ՝ «ենթադրում է ամուսիններից յուրաքանչյուրի ներաշխարհի գիտակցական վերակառուցում, որոնում այնպիսի միջոցների, որոնք ապահովեին ամուսինների հոգեֆիզիոլոգիական, բարոյական, մտավոր ու կուլտուրական համատեղելիությունը»: Ահա թե ի՛նչ է ժամանակակից ամուսնությունը: Ահա թե ինչպիսի՛ պատասխանատու, հոգևոր բարդ դերի պետք է պատրաստ լինեն մեր երեխաները:

Բայց պատրա՞ստ են, արդյոք:

Անշուշտ, մեր պատանիներն ու աղջիկները բոլոր հնարավորություններն ունեն իրենց սրտի ընկեր գտնելու. չէ՛ որ երկուսն էլ այժմ բավական կրթված են: Պարտադիր տասնամյա կըրթություն (դպրոցում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում, տեխնիկումում), ուսանողների ընդունելության ընդլայնում բուհերում, արտադրության, ինչպես և մասնագիտությունների բարդացում— այս ամենը հոգեպես ձևավորում է մարդուն: Ուսյալ մարդը, որպես կանոն, ավելի զարգացած է, լավ է հասկանում գրականությունը, արվեստը և ամենակարևորը՝ մարդկային հոգին: Երիտասարդը փնտրում է համանման հետաքրքրություններով ու ձգտումներով մի աղջկա, որը կարողանա հասկանալ իր ապրումները, տարակույսները, մի խոսքով, դառնա իր իսկական բարեկամը:

Իսկ հետո՞: Կարո՞ղ են արդյոք այս երկուսը և նրանց նման հազարավորները կարգավորել ընտանեկան հարաբերությունները, որոնք մեր երիտասարդ ժամանակակիցներից պահանջում են ո՛չ միայն հոգեկան մեծ ուժ, այլև այն ամենի ռեալ իմացություն, ինչ սպասվում է նրանց հարսանիքից հետո:

Օդեսացի սոցիոլոգները մի քանի տասնյակ երիտասարդների ու աղջիկների առաջարկել են պատասխանել այն հարցին, թե ի՞նչ ասոցիացիաներ է հարուցում նրանց հոգում «ընտանիք» բառը: Նրանք պատասխանել են՝ «սեր, համատեղ հանգիստ, հավատարմություն, երեխա»: Այնուհետև նույն հարցն ուղղել են տարեկից, բայց արդեն ընտանեկան կյանքի ոչ այնքան մեծ ստաժ ունեցողներին: Վերջիններս պատասխանել են. «ընտանիքը տուն է, սեր, երեխաներ, հոգսեր, տնարարություն, բնավորությունների, վիրավորանքների, դժվարությունների հաղթահարում, վեճերի հարթում»: Ահա թե իրական կերպարը որքա՜ն տարբեր է իդեալականից:

Վերջերս ներկա եղա մի շատ հետաքրքրական բանավեճի: Կրասնոդար քաղաքի № 36 դպրոցում հավաքվել էին միայն աղջիկներ՝ խոսելու առաջիկա կյանքում իրենց տեղի, կոչման մասին: Ինչո՞ւ հենց այս դպրոցում և միայն աղջիկներ: Որովհետև տարիներ շարունակ, 1913, 1916 և 1920 թվականներին նշանավոր ռուս մանկավարժ Պ. Ն. Կոլոտինսկին ուսումնասիրում էր Կրասնոդարի իգական գիմնազիայի (որտեղ այժմ գտնվում է ընդհանուր միջնակարգ այդ դպրոցը) շրջանավարտների բարոյական, հոգևոր արժույթները:

Նույն դպրոցում, 70-ական թվականների սկզբներին, նույն ծրագրով հետազոտություններ կատարեց նաև Ռ. Գ. Գուրովան: Ապա, բաղդատելով երկու հետազոտությունները՝ նա անհամեմատելի թռիչք նկատեց սովետական աղջիկների կուլտուրայի, հայացքների խորության, քաղաքացիական հասունության հարցում՝ 60 տարի առաջ ապրած նրանց հասակակիցների համեմատ:

Այժմ հարկ չկա վերլուծելու աղջիկների այլ հետաքրքրություններին վերաբերող պատասխանները. անդրադառնանք միայն ամուսնության և ընտանիքի մասին նրանց կարծիքներին: Ահա գիմնազիստուհիների առավել բնորոշ պատասխանները:

«Կարելի է խոսել ու երազել սիրով ամուսնության մասին, բայց այդ ցնորք է: Իրականում, սակայն, այդպես չէ, այլ ինչ-որ տհաճ բան. ստիպված ես ամուսնանալ ոչ նրա հետ, ում կուզեիր»: «Առայժմ կինը միայն մի ճանապարհ ունի՝ ամուսնություն»: «Ես մեծ ցանկություն ունեմ ուսումս շարունակելու, բայց ստիպված եմ մարդու գնալ»: «Կինը կոչված է միայն ընտանեկան կյանքի համար»: «Ամուսնացած կինը թոշնում է, նրա հետաքրքրությունները պտըտվում են սոսկ ընտանիքի շուրջ»: «Եթե կինն ուզում է նվիրվել հասարակական գործունեությանը, ապա չպետք է ամուսնանա»:

Այնուհետև Գուրովան բերում է սովետական դպրոցի 17-ամյա շրջանավարտ աղջիկների առավել բնորոշ կարծիքները. «Նախ պետք է մասնագիտություն ձեռք բերել, հետո միայն ամուսնանալ»: «Երբ սիրում ես, անհնար է անջատ լինել»: «Կյանքում պետք է հավատարիմ ընկեր»: «Նախ հարկ է ստուգել զգացմունքները, ապա որոշել՝ ամուսնանա՞լ, թե՞ ոչ»:

Սոցիոլոգները ճիշտ հետևություններ են անում. մեր ժամանակակից աղջիկները համոզ-

ված են, որ ամուսնությունը չի կարող խանգարել ուսմանն ու աշխատանքին, կտրել մարդուն հասարակական կյանքից, արգելակել նրա հոգևոր աճը:

Ես ծանոթացա այս ուշագրավ ուսումնասիրությանը և շատ ցանկացա անձամբ տեսնել այդ աղջիկներին, նրանց, ովքեր 70-ական թվականների կեսերին ավարտել են Կրասնոդարի № 36 դպրոցը:

Եվ գնացի Կրասնոդար: Իմ խնդրանքով իսկ կազմակերպվեց «Դու և քո տեղը կյանքում» բանավեճը:

Նորից չեմ նկարագրի ապագա կյանքի բոլոր ոլորտները, որոնց մասին աղջիկներն այնպես ոգևորված խոսում էին: Կասեմ միայն, որ այդ բոլոր հուզիչ ելույթները հաստատեցին Ռ. Գ. Գուրովայի եզրահանգումները մեր երիտասարդ ժամանակակցուհու՝ իբրև անհատի աճի մասին: Հաստատվեցին նաև գիտնականի եզրակացությունները ընտանիքի ու պրոֆեսիայի համատեղելիության, սիրո, ամուսնության վերաբերյալ: Աղջիկներն ասում էին, որ չեն պատկերացնում ամուսնությունն առանց սիրո: Նրանք համոզված են, որ իսկական սերը ոչ թե խանգարում, այլ օգնում է նրանց՝ կրթություն, մասնագիտություն ձեռք բերելու. երազում էին այնպիսի ամուսին, որի հետ նրանց կմիավորեին ընդհանուր հետաքրքրությունները, ճաշակը, հոգեկան կատարելագործման հասնելու ձգտումը:

Այս ամենը՝ 17-ամյա ժամանակակիցներիս բարոյական վեհությունը, սքանչելի էր, ուրախալի: Եվ ես ուրախացա: Բայց միաժամանակ մի ինչ-որ բան պակասում էր. այս անաղարտ ու վսեմ դատողություններում անհանգստացնող մի բան կար: Եվ վերջապես ես հասկացա՝ ինչն էր այդ: Վաղվա հարսնացուները, որոնցից շատերը, ինչպես արդեն գիտենք, մի երկու տարուց կին, մայր և տնտեսուհիներ էին դառնալու, իրենց դատողություններում չափազանց հեռու էին ռեալ իրականությունից, հոգսերից, դժվարություններից, այն ամենից, ինչ անխուսափելիորեն սպասում էր նրանց ամուսնական կյանքում: Գուրովան կշտամբանքով է բերում գիմնազիստուհիներից մեկի պատասխանը՝ «Կինն այնուամենայնիվ, պետք է լինի կին, նա պետք է տնտեսություն վարի ու երեխաներ խնամի: Իսկ ի՞նչ կլինի այնժամ, երբ կինը դառնա պրոֆեսոր, գիտնական, կամ թե նման մի բան»:

Իհարկե, լավ չէ, որ այս աղջիկը տունը, տընտեսությունը, ընտանիքը համարում է կնոջ հիմնական կոչումը: Բայց արդյոք լա՞վ է, որ բանավեճի մասնակից ժամանակակիցներիցս և ոչ մեկը չի հիշատակել տնտեսության մասին: Ճի՞շտ է արդյոք, որ երեխաների մասին կա՛մ չեն խոսել առհասարակ, կա՛մ ասել են. «Ուզում եմ ունենալ երկու երեխա՝ տղա և աղջիկ», իսկ իրենց ծնողական պարտքի մասին՝ ոչ մի խոսք:

Բայց գլխավորը, որ ինձ զարմացրեց, այն էր, որ աղջիկները մանկամտություն, թերիմացություն հանդես բերին հենց այն հարցում, որի մասին այնպե՜ս շատ խոսում էին. զրույցն առավել չափով ծավալվում էր փոխըմբռնման, ավելի ճիշտ՝ իրար հասկանալու շուրջ. «Ամուսինս պետք է ինձ լավ հասկանա», «Մենք պետք է իրար հասկանանք», «Ամուսինս պետք է լինի իմ հավատարիմ բարեկամը», «Ամուսինս պետք է հոգա իմ մասին» և այլն: Հիսունից միայն մեկը երկչոտ ասել է. «Ես կցանկանայի հանդիպել այնպիսի մարդու, որին հարկավոր լինեի միայն ես, որպեսզի կարողանայի հասկանալ նրան ամեն ինչում և միշտ օգնել նրան— և՛ խոսքով, և՛ գործով»:

Իհարկե, մեծ տարբերություն կա որոշակի հանգամանքներում մարդու ասածի և արածի միջև: Ինչ խոսք, աղջիկները դեռևս բավական ժամանակ ունեն հասունանալու, լավ կին— զգայուն, բարեկիրթ, հավատարիմ ընկերուհի դառնալու: Բայց ավելի լավ չէ՞ր լինի, եթե մենք կարողանայինք հենց այսօրվանից, աստիճանաբար նրանց դաստիարակել որպես այդպիսին:

Այլ մի բանավեճ, մի այլ լսարան: Դպրոցական արձակուրդների օրերին Մերձկոստրոմայի երիտասարդական «Վոլգար» ճամբարում հավաքվել էր բարձր դասարանցիների՝ 16—17 տարեկան աշակերտների մի մեծ խումբ: Պարելուց, դահուկներով սահելուց, սպորտդահլիճներում խաղերից դադրած տղաները բավականությամբ չմասնակցեցին «Ի՞նչ է երջանկությունը» բանավեճին: Զրույցի լրջությունը, սակայն, հարկադրեց կենտրոնացնել ուշադրությունը, հարուցեց հետաքրքրություն, ապա և ակտիվ մասնակցություն: Եվ այդ միանգամայն բնական էր. խոսքն ապագայի, բայց արդեն ոչ այնքան հեռավոր, ինքնուրույն կյանքի մասին էր: Խոսում էին մասնագիտության ու աշխատանքի, ունակությունների դրսևորման հնարավորության, ազատ ժամանակի, բարեկամների և, իհարկե, նաև սիրո մասին:

Այս անգամ արդեն ինձ առավել հետաքրքրում էր տղաների կարծիքը: Սիրո և, հատկապես, ընտանիքի հարցում աչքի էր զարնում տղաների ու աղջիկների պատրաստականության տարբերությունը: Իրենց ապագա հասուն կյանքի, ամուսնու և հոր պարտականությունների մասին տղաները փաստորեն պատկերացում իսկ չունեին: Երբ այդ մասին այնուամենայնիվ խոսվեց, նրանց «նա պետք է» բառերում հնչեցին ավելի համառ ու պահանջկոտ ելևէջներ, քան աղջիկների մոտ: «Կինս ամեն ինչում պետք է համակերպվի իմ պլաններին ու ճաշակին»: «Կինս պետք է կրթված լինի ինձնից ոչ պակաս, բայց



միաժամանակ՝ քնքուշ ու նուրբ»: «Նա պետք է ինձ սփոփի դժբախտության պահին, պետք է լինի իմ հավատարիմ բարեկամը»: Եվ առավել թույլ, քան աղջիկները՝ «Ես պետք է» մոտիվը: Մինչդեռ, անկեղծ ասած, կինն իր նրբազգացությամբ, խոր հուզականությամբ առավել կարիք ունի աջակցության, ցավակցության, սփոփանքի: Եվ, անշուշտ, տղան պետք է իմանա, որ աջակցություն սպասվում է հենց իրենից՝ ավելի արիական, ուժեղ մարդուց:

Ընտանեկան ապագա կյանքի մասին այս զրույցի ընթացքում ինձ առանձնապես զարմացրեց և հուզեց մի այլ բան. վերաբերմունքը կյանքի կենցաղային կողմին: Տնային բոլոր պարտականությունները, որոնց մասին հիշում են տղաները, այժմվանից իսկ նրանք դնում էին իրենց ապագա կանանց ուսերին: «Եվ դեռ կինը պետք է կարողանա համեղ ուտելիքներ պատրաստել»: «Տանը հյուրընկալ մթնոլորտ ստեղծել. այդ արդեն զուտ կանացի գործ է: Ամեն ինչ պետք է գեղեցիկ դասավորված, հավաքված լինի. իհարկե, այս էլ կինը պետք է անի»: «Կուզեի՝ տուն մտնելիս ամեն ինչ կարգին լինի, ճաշը՝ պատրաստ, լվացքը՝ արված ու արդուկված»: Եվ ոչ մի խոսք այս բոլոր ձանձրալի պարտականություններում կնոջն օգնելու, ապագա ընտանիքի, ընտանեկան կյանքի, կենցաղի կազմակերպման համար սեփական պատասխանատվության մասին:

Նման պատասխանատվության դաստիարակությունը, անշուշտ, պետք է սկսել ընտանիքից:

***

Բայց ի՞նչ է նշանակում երիտասարդներին դաստիարակել որպես լավ ամուսիններ, նախապատրաստել նրանց ընտանեկան կյանքի համար: Հիշենք թեկուզ այս բնորոշումը. «Այսպես կոչված՝ սեռական դաստիարակությունը, այս տերմինի առավել լայն ու խոր ըմբռնմամբ, ամենից առաջ զգացմունքների, կամքի, մարդու վարքի կուլտուրայի ձևավորումն է, անհատի բարոյագեղագիտական շաղկապի ստեղծումը:

Այն պետք է սկսել երեխայի կյանքի առաջին իսկ տարիներից» (պրոֆեսոր Ա. Գ. Խարչև):

Նշանակում է ընտանեկան դաստիարակությունը (պայմանականորեն այսպես անվանենք «ապագա ընտանիքավորի դաստիարակություն» հասկացությունը) պետք է սկսել դեռ նախադպրոցական տարիքից: Վաղ չէ՞, արդյոք: Ո՛չ, վաղ չէ: Քանզի նախապատրաստել ընտանեկան կյանքին նշանակում է ամենից առաջ նրան սովորեցնել լինել բարյացակամ և ընկերասեր:

Կարծում եմ՝ հնարավոր է կիրառել ինչ-որ մի պրոֆիլակտիկա— տղաներին ու աղջիկներին, պատանիներին ու աղջիկներին դաստիարակել փոխադարձ անկեղծ հարգանքի ոգով: Պարտավոր ենք մեր երեխաներին համակել իսկական ընկերասիրությամբ, որը և հետագայում կդառնա ընտանեկան նորմալ մթնոլորտի հիմքը:

...Աղջիկը մի ծաղիկ պոկեց ու նվիրեց տղային: Տղան մի նկար խզբզեց՝ նվիրեց աղջկան: Հուզի՞չ է, հետաքրքրակա՞ն: Դեռ մի՛ք ժպտա: Այդ սկիզբն է: Տևական ու դժվարին այն պրոցեսի ակունքը, որի նշանաբանն է՝ «դաստիարակել փոխադարձ հարգանք ու համակրանք»: Այս է սեռի բարոյական դաստիարակության սկզբունքը:

Տղաներ ու աղջնակներ... Ահա նրանք նստած են աշակերտական նստարանին: Կեսը՝ դարչնագույն շրջազգեստներով, մյուս կեսը՝ կապույտ բաճկոնակներով ու սպիտակ վերնաշապիկներով: Երկու լագեր, երկու բևեռ: Մերթ անտարբերների, մերթ՝ տագնապողների: Ինձ շատ լավ ծանոթ մի աղջիկ հաճախ է պատմում դպրոցում տեղի ունեցող իրադարձությունների, դասարանային գործերի ու միշտ աղջիկների մասին: Իսկ տղաներին հիշում է միայն այն դեպքում, երբ կատարվում է արտակարգ որևէ բան, չարություն, խենթություն է անում որևէ մեկը: «Ընդհանրապես ինչպիսի՞ն է նրանց՝ տղաների կյանքը»,— հարցնում եմ ես: Աղջիկն ուսերն է թոթվում՝ «Չգիտեմ: Ինչ-որ տարօրինակն են նրանք»: Տարօրինակն են— այդ նշանակում է փորձել հասկանալ նրանց... Ո՛չ, աղջիկն իր վտիտ ուսերն է թոթվում՝ «Ա՜յդ էր պակաս՝ տղաներով հետաքրքրվեմ»:

Յանոշ Կորչակն իր մանկավարժական նովելներից մեկում («Սեր») դիմելով աղջկան, ասում է. «Իզուր ես արհամարհում տղաներին, զուր ես կարծում, թե նրանք բոլորն էլ կոպիտ են, չոր, խիստ: Նրանք էլ կարծում են, թե բոլոր աղջիկներն են բամբասկոտ, շատախոս, կոտրատվող»: Խելացի մանկավարժն ավարտում է այսպիսի խրատ-կատակով. «Նրանք վատը չեն, պարզապես ուրիշ են»:

Իհարկե, կարելի է ծիծաղել այս փոխադարձ զգուշավորության վրա, անուշադրության մատնել «լագերների» անտարբերությունը: Բայց հետագայում այդ չի՞ դառնա արդյոք օտարացման, անջատման մի ինչ-որ ստերեոտիպ, որը դժվար կլինի հաղթահարել:

«Մենք» և «նրանք»: Չի՞ կարելի դարձնել միայն «մենք»: Օդեսացի ուսուցիչ և սոցիոլոգ Ա. Գ. Մեդվեդսկայան կատարեց մի այսպիսի փորձ. հենց առաջին դասարանից նա ջանաց լավ հարաբերություններ ստեղծել աշակերտների և աշակերտուհիների միջև: Թվում է, թե խոսքը մանրուքների մասին է: Տղաներն օգնում էին աղջիկներին՝ տանելու ծանր իրերը: Տղաներին վարժեցնում էին աղջիկներին ճա-

նապարի տալ, վերարկու մատուցել: Աղջիկներն էլ նախքան մոր նկատելը կարում էին բաճկոնակների պատռվածքները, պոկված կոճակները:

Նրանք հետևում էին ո՛չ միայն իրենց, այլև համադասարանցիների արտաքին տեսքին: Եվ, որպեսզի պոկված կոճակ կամ պատռված հագուստ ունեցողը չմտածի, թե կարել-կարկատել պարտավոր է միայն մարդկության մի կեսը, տնարարության դասերին կազմակերպում էին տղաների ու աղջիկների մրցույթ— ո՛վ ավելի խնամքով ու կոկիկ կկարի, կամրացնի, կամ կկցակարի:

Երեխաներին աշակերտական նստարանին նստեցնելիս անպայման հաշվի էին առնում նրանց ցանկություններն ու հակումները: Ցածր դասարանների 200 աշակերտներից 182-ը գրել էին, թե ցանկանում են նստել միասին՝ տղա ու աղջիկ: Այդ չի՞ խանգարում արդյուք ուսման ընթացքին: Ա. Գ. Մերվեդսկայայի ուսումնասիրություններից պարզվել է, որ հարցվող ուսուցիչների 98 տոկոսը պատասխանել է, թե այդպիսի ընկերությունը, ընդհակառակը, ստեղծում է դասարանում հանգստի, բարյացակամության մթնոլորտ, ավելին, բարձրացնում առաջադիմությունը:

Ափսո՜ս, այդ չեն հասկանում ուրիշ շատ մանկավարժներ: Սովորաբար նման դեպքերում նրանք ասում են. «Այդ էր պակաս, հիմա էլ դասարանում սիլի-բիլի անեն»: Բայց չէ՛ որ ամենքին կոլեկտիվում միավորելը, հակառակը, հենց վերացնում է «սիրաբանության» գռեհիկ երանգն աղջիկների ու տղաների փոխհարաբերություններում, նպաստում դասարանում հոգեբանական նորմալ մթնոլորտի ստեղծմանը: Իսկ նման միջավայրում ուսուցչի համար ևս հեշտ է աշխատել: Այս արդյունքին լավատեղյակ են այն մանկավարժները, ովքեր փորձել են միացնել երկու «լագերները»:

Տարիներ շարունակ Գերցենի անվան մանկավարժական ինստիտուտի (մասամբ՝ Լ. Ու. Վերբի) ղեկավարությամբ Լենինգրադի 303-րդ դպրոցում մշակվում էին երեխաների փոխհարաբերությունների սահմանման լավագույն չափանիշներ— համագործակցություն ուսման մեջ և հասարակական աշխատանքում, նշվում էին այդ հարաբերությունների վերակառուցման ուղիները:

Պարզվեց, որ տուրիստական արշավներում, ամառային աշխատանքային ճամբարներում հատկապես նկատվել է գործարար կապերի առավել ուժեղացում: Կուլտուրայի հուշարձաններ, գեղատեսիլ բնություն, նոր, խոր տպավորություններ, ծիծաղ, կատակ, զվարճություններ: Ինչպե՞ս կարող է այս ամենը բարեկամության, համակրանքի զգացում չարթնացնել: Եվ, հավանաբար, ծնվելով՝ այս հարաբերությունները երկար կպահպանվեն:

Անշուշտ, ես նկատի չունեմ միայն այդ աղջիկների ու տղաների հարաբերությունները, այլ հարաբերություններ «նրանց» նկատմամբ, ովքեր, պարզվում է, այնպե՜ս հաճելի ու լավն են քեզ համար: Նրանք տարբեր են, բայց նրանց մեջ է այն մեկը, ով առավել հետաքրքրական է քեզ համար, մոտ է քեզ ճաշակով, հակումներով, հոգու թռիչքով: Եվ նա ամենևին էլ ամենաբարձրահասակ, ամենաուժեղ տղան, ամենագեղեցիկ ու նուրբ աղջիկը չէ: Այստեղ, այս մանկական ընկերության մեջ, զգալիորեն վերանում է զուտ արտաքին հատկանիշներով հրապուրվելը, մշակվում է իրականությունը գընահատելու այն կարողությունը, որը հետագայում այնպե՜ս պետք է լինում նրանց անձնական կյանքում:

Մեր կարծիքով, հետաքրքրական աշխատանքներ են տարվել Ղազախստանի երկու դպրոցներում՝ քաղաքային (Ալմա-Աթայում) և գյուղական (Չիմքենդի մարզի Ա. Սեյֆուլինայի անվան): Ուսուցիչներն ու գիտաշխատողները, Ն. Պ. Վերեշչագինայի ղեկավարությամբ, նախ ուսումնասիրել են տղաների ու աղջիկների հոգեֆիզիոլոգիական տարբերությունները: Նրանք խիստ զանազանվել են բարոյական դաստիարակությամբ, իրենց պահելու, ընդհանրապես մարդկանց և մասնավորապես մյուս սեռի ներկայացուցիչների հետ շփվելու կարողությամբ: Այստեղ հատուկ ուշադրություն են նվիրել երեխաների այն խմբին (առավելապես տղաներին), որոնք աչքի էին զարնվում գռեհկությամբ, հեգնանքով էին լսում բանաստեղծությունները սիրո մասին, մի խոսքով, թերի պատկերացում ունեին ամենագեղեցկի մասին: Այս աշակերտների հետ ուսուցիչներն առանձնապես զգույշ էին, շատ էին զրուցում՝ անբռնազբոս, տակտով, ջանալով նրանց իրազեկ դարձնել սեռերի նորմալ փոխհարաբերությունների մասին եղած հայացքներին, բացատրում նրանց այս հարաբերությունների բնականությունը:

Ուսուցիչները իրենց սաների հետ հաճախ էին լինում թատրոնում, պատկերասրահում, ապա մի ամբողջ դաս նվիրում ներկայացման, ցուցահանդեսի, ֆիլմի քննարկմանը: Քննարկումներում զրուցում էին սիրո, երկու սեռերի փոխհարաբերությունների, ընտանեկան կյանքի սկզբունքների մասին:

Այստեղ երկու «լագերների» միջև ճիշտ հարաբերությունների ստեղծման մի միջոց գտան: Պարն էր այդ: Դաստիարակներն իրավամբ նկատել էին, որ պարելիս վարվելակերպը անմիջականորեն կապված է բարոյական նորմերի հետ: Եվ, ի տարբերություն շատ այլ դպրոցների, այդտեղ ո՛չ միայն չէին արգելում երեկույթների կազմակերպումը, ո՛չ միայն չէին վախենում մոդայիկ երաժշտությունից ու ժամանակակից շարժումներից, ընդհակառակը, ամեն առիթով կազմակերպում էին պարերեկոներ, սովորեցնում գեղեցիկ պարել: Բայց, միաժամանակ, ձգտում էին զգուշաբար, աննկատելիորեն հուշել պատանիներին, թե ինչպես պետք է պարելու հրավիրել և ընդունել կամ չընդունել հրավերը: Ինչպե՛ս կատակել և ինչպե՛ս ընդունել կատակը, ծիծաղել ոչ հռհռալով և ոչ էլ ձեռքերով բերանը փակած. ինչպե՛ս վարվել, երբ պարընկերը վարժ չի պարում. ինչպես ծանոթանալ անծանոթի հետ: Եվ էլի հազար ու մի մանրուքներ: Ինչպես հետագայում նշում է իր դիսերտացիայում Ն. Վերեշչագինան, մանկավարժների կարծիքով, պարը մեծ դեր է խաղացել, քանի որ «պարը նախամուսնական հարաբերությունների կուլտուրայի լավագույն դրսևորումներից մեկն է: Այն կարող է մեծ դեր խաղալ այդ հարաբերությունների ազնվացման ոլորտում»: Հիմնականն այստեղ, անշուշտ, դեռահասների փոխհարաբերությունների էությունը չէ միայն, այլ այդ էության արտաքին դրսևորումը՝ վարվելակերպի կուլտուրան, որը շատ կարևոր է ապագա փեսացուի ու հարսնացուի, կնոջ և ամուսնու համար:

Ծանոթանալու, զրույցը վարելու, չկոտրատվելու, չծեքծեքելու, ազատ, բայց և արժանապատվությամբ խոսելու կարողություն. որքա՜ն երախտապարտ կլինեն իրենց դաստիարակներին այս այբուբենը մանկուց յուրացրած պատանիներն ու աղջիկները:

Լավ դաստիարակված մարդը միշտ ավելի ինքնավստահ է: Սակայն անդրադառնանք մի հարցի ևս: Արդյոք այդքան կարևո՞ր է այդպիսի ինքնավստահությունը: Կարծում եմ՝ շատ: Եվ վստահություն ո՛չ միայն իրեն, իր ուժերին, հնարավորություններին, այլև՝ դուր գալու ունակությանը:

Սուխոմլինսկին մեծ նշանակություն էր տալիս երեխաներին ինքնահարգանքի ոգով դաստիարակելուն: Նա գտնում էր, որ մանկական կոլեկտիվը միայն այն ժամանակ է դառնում դաստիարակող ուժ, երբ բարձրացնում է յուրաքանչյուր մարդուն, յուրաքանչյուրի հոգում հաստատում սեփական արժանապատվության, ինքնահարգանքի զգացում: Չէ՛ որ մայրական ու հայրական իսկական սերը,— ասում է նա,— իր խորքում կրում է այն ցանկությունը, որ որդին կամ դուստրը կարողանան հարգել իրենք իրենց, համակվեն լավ մարդ դառնալու ձգտումով: Սուխոմլինսկին տեսավ, որ փորձված մանկավարժները կարողացել են հասնել այն բանին, որ երեխան հպարտանա ինքն իրենով, իր արարքներով, կարողանա պահպանել իր արժանապատվությունն ու պատիվը... Եվ հիանալի մանկավարժի դաստիարակչական ողջ գործունեությունը համակված էր երեխայի, դեռահասի, պատանու կամ աղջկա մարդկային արժանապատվության բարձրացման հոգածությամբ:

Վիլնյուսում ընտանեկան հարաբերությունների կաբինետում ինձ պատմեցին մի քանի անհաջող ամուսնությունների մասին, որոնց ողբերգությունը հետևանք է այն անվստահության, որին երիտասարդները ծանոթ էին դեռ մանկուց:

...Տղան գիրուկ մեծացավ, նրան ծաղրում էին և՛ դասարանում, և՛ բակում: Երբ մյուս հասակակիցները պարծենում էին աղջիկներից ստացած երկտողերի համար, նա լուռ ու մունջ տառապում էր: Նրան դեռևս ոչ մի աղջիկ համակրանքով չէր նայել, այլ միայն ծաղրանքով: Նա վախենում էր անգամ կինո հրավիրել, կըմերժեին: Իսկ պարի մասին խոսք իսկ չկար. ամաչելով գիրությունից, նա նույնիսկ պարել չէր սովորել: Փորձե՞լ էին արդյոք ուսուցիչները ձերբազերծել նրան սեփական անլիարժեքության այդ տանջալից զգացումից: Ջանացե՞լ էին բացահայտել նրա այն դրական հատկանիշները, որոնց համար կարող էին հարգել նրան համադասարանցիները: Աշխատե՞լ էին ներգրավելու նրան հասարակական կյանքի ոլորտը, ուր նա կզգար իր օգտակարությունը, ուր, թերևս, ձեռք բերեր ինքնավստահություն, որն այնքա՜ն կարևոր է ինքնահարգանքի համար: Այդ մասին նա չի հիշում: Համենայն դեպս, ընտանեկան հարաբերությունների կաբինետում իր մանկության ուսուցիչների մասին մասնագետների տված հարցերին նա պատասխանեց. «Ինձ թվում է՝ ինձնով ոչ-ոք չի հետաքրքրվել»:

Վատ չէր սովորում: Ավարտել էր դպրոցը, բուհը, ստացել ինժեների դիպլոմ: Իսկ արտադրության մեջ աշխատանքը ոչ մի կերպ չէր կարգավորվում: Չէ՛ որ նա երիտասարդ մասնագետ էր, կազմակերպիչ, ղեկավար: Բայց ղեկավարել, ամենից առաջ, նշանակում է և վըստահ լինել սեփական որոշումների ճշգրտությանը: Մինչ նա շարունակում էր տառապել անինքնավստահությամբ: Ուստի, նրա ձայնն անվըստահ էր նույնիսկ կարգադրություններ անելիս: Նրան այնքան էլ չէին լսում, քիչ էին հաշվի առնում և, չնայած վատ չէին վերաբերվում,— հանգիստ է, անհիշաչար, ոչ-ոքի վատություն չի անում,— բայց նա զգում էր, որ հեղինակություն չունի:

Հետո եկավ մի ժամանակ, երբ նրան թվաց, թե ողջ կյանքը փոխվել է: Նա զգաց, որ ուրիշ մարդ է դարձել: Սիրահարվեց, ամուսնացավ... Վերածնման պատրանքը երկար չտևեց: Կինը մշտապես իրենից դժգոհ էր, թեև նա ամեն կերպ ջանում էր դուր գալ: Բայց այդպես ավելի էր զայրացնում նրան: Ընդհանրապես շատ բան էր

զայրացնում— և՛ այն, որ անհարգալից, ինչպես իրեն թվում էր, փոքր-ինչ ծաղրանքով են վերաբերվում ամուսնուն աշխատավայրում, և՛ այն, որ նա երկչոտ, վարանոտ էր անծանոթ միջավայրում, և՛ այն, որ նույնիսկ չէր կարողանում բնավ պաշտպանել իրեն:

Կինը բաժանվեց նրանից: Իսկ որոշ ժամանակ անց նա հանդիպեց մի ուրիշ կնոջ: Վերջինս, որը շատ էր տառապել ու քանի՜ցս վիրավորվել, հանկարծ նրա մեջ տեսավ հիմնականը՝ բարությունը: Եվ սիրեց նրան: Ո՛չ դուր գալու համար, այլ միանգամայն անկեղծորեն, նրան ասաց, թե էությամբ որքա՜ն լավ մարդ է նա, սակայն առօրյա հարցերում շատ անճարակ. չէր կարողանում չճարվող մթերքներ կամ տարվա եռուն շրջանում հանգստի տան ուղեգիր ձեռք բերել: Դա անկեղծորեն հուզում էր կնոջը: Այդ անկարողության մեջ նա տեսնում էր հոգու նրբություն և գնահատում այն: Անձի բարձր գնահատում ուրիշի կողմից, և նա աստիճանաբար սկսեց հարգել ինքն իրեն: Ո՛չ, նա պարծենկոտ, ինքնասիրահար և անպատկառ չդարձավ: Պարզապես հասկացավ, որ ոչնչով վատ չէ ուրիշներից: Եվ նրա այս նոր ինքնագիտակցումը փոխանցվեց շրջապատին: Նա սկսեց այլ կերպ նայել սեփական գիտելիքներին, ավելի վստահ աշխատեց, վեր բարձրացավ ծառայողական սանդուղքով, արժանացավ հարգանքի: Բայց որքա՜ն տառապալի տարիներ ապրեց նա՝ աշխարհին անտես արցունքներով: Այդ չէր լինի, եթե մեծերը՝ ծնողները, ուսուցիչները, ջոկատավարները կարողանային ժամանակին մտածել տղային ինքնավստահությամբ համակելու մասին:

Ահա թե ինչու ես լիովին համամիտ եմ այն գիտնականներին, որոնց կարծիքով՝ ուսուցիչները պետք է միջոցներ գտնեն աշակերտի սոցիալական հեղինակության բարձրացման, նրա՝ որպես անհատի, ինքնահաստատման համար: Իսկ այդ այնքան էլ դյուրին չէ: Պետք է հետամուտ լինել, թե դեռահասը չի՞ կարող արդյոք դրսևորել իրեն որևէ ասպարեզում, եթե ոչ ուսման մեջ, ապա հասարակական աշխատանքում, սպորտում, գեղարվեստում: Չէ՛ որ չի կարող պատահել, որ մարդ առհասարակ զերծ լինի որևէ ունակությունից:

Օդեսացի սոցիոլոգ Լ. Ա. Լեմեխովան, ուսումնասիրելով երիտասարդների հայացքները սեռերի փոխհարաբերության, ամուսնության ու ընտանիքի վերաբերյալ, առանձնացրել է երեք հիմնական կարգ:

ԱՌԱՋԻՆ. Ներդաշնակ-ձևավորված բարոյական ըմբռնումներ, զգացմունքների զարգացած կուլտուրա, գիտակցված վարք, արդյունքը՝ անկեղծ սեր պատանու կամ աղջկա ապագա ընտանեկան կյանքում:

ԵՐԿՐՈՐԴ. վեհ ռոմանտիկական-իդեալականացված, «գրքային», կյանքից կտրված պատկերացումներ: Հաճախ, բախվելով իրականությանը, այս խմբի պատանիներն ու աղջիկները հիվանդագին են արձագանքում իդեալի ու իրականության անհամապատասխանությանը, հիասթափվում են, ոմանք մի ծայրահեղությունից ընկնում են մյուսի մեջ— սքանչելի, երկնային սիրուն հավատալուց հետո սկսում են ընդհանրապես չհավատալ սիրուն:

ԵՐՐՈՐԴ. հոգևոր աղքատություն— սեռերի փոխհարաբերությունների հարցում նկատվում են պարզեցված պատկերացումներ: Երիտասարդները (ավելի հաճախ պատանիները) դրանցում տեսնում են սոսկ ֆիզիկական պահանջ:

Առաջինի դեպքում դաստիարակի խնդիրն ամենից հեշտ է. եթե երիտասարդը բարոյապես հասունացել է, ունի հաստատուն ըմբռնումներ, մնում է միայն բացատրել նրան, որ հարկ չկա շտապելու, թող սպասի, սերն անպայման կգա. կարևորն այն է, որ նա չդավաճանի իր սկզբունքներին, և այնժամ այդ սերը կլինի իսկական, խոր զգացմունք: Անշուշտ, այստեղ ևս ամեն ինչ պարզ չէ: Միշտ չէ, որ իսկույն հանդիպում է սիրո արժանի մարդը: Լինում է և՛ դառնություն, և՛ տառապանք: Պատահում է, որ անարժան «զույգի» ազդեցությամբ կամ դեպքերի անհաջող բերումով խախտվում է պատկերացումների ներդաշնակությունը, աղավաղվում են ըմբռնումները: Նման դեպքերում մեծ ջանքեր են պահանջվում դաստիարակից— ծնողներից, ուսուցիչներից՝ վերահաստատելու պատանու կամ աղջկա նախնական հայացքները: Եվ, եթե այդ հայացքներն ամուր են պատվաստվել, ապա հաճախ երիտասարդն իր մեջ ուժ է գտնում նախկին վիճակին վերադառնալու: Ավելի դըժվար է «իդեալիստների» հետ: Նրանց պատկերացումներին անհրաժեշտ է հաղորդել իրականության տարր: Նրանց հետ ամենից ավելի պետք է խոսել սիրո բարդությունների, ընտանեկան կյանքի դժվարությունների մասին:

Ի դեպ, փորձը ցույց է տվել, որ եթե դա ժամանակին չարվի, երիտասարդ ամուսինները կարող են խիստ թունավորել և՛ իրենց, և՛ միմյանց կյանքը՝ կենդանի մարդուն չափելով «հերոսի» այն ստերեոտիպով, որ պատկերացրել են իրենց երևակայությամբ: Ամուսնալուծությունների մեծ մասը, հավանաբար, հետևանք է իրականության ու իդեալի հակասության:

Այնուամենայնիվ, ամենից դժվար է դաստիարակել, ավելի ճիշտ՝ վերադաստիարակել այն «ռեալիստին», որը կնոջ ու տղամարդու փոխհարաբերություններում ընդհանրապես անհրաժեշտ չի համարում հոգևոր կողմը: Եթե կյանքը «ռոմանտիկին» ի վերջո կարող է սովորեցնել ճիշտ համատեղել ցանկալին ու իրականը, ապա առհասարակ ռոմանտիզմից զուրկ մարդը ողջ կյանքում կարող է մնալ թերարժեք, նա կարող է այդպես էլ երբեք չճաշակել զգացումների այն հարստությունը, որն իր հետ բերում է ոգեշունչ զգացմունքը:

Տարիներ առաջ գրադարաններից մեկում զրուցեցի տեխնիկական բուհի մի ուսանողի՝ ապագա ինժեների հետ: Գեղեցիկ երիտասարդ էր՝ հաղթանդամ, թիկնեղ, շիկահեր, ջինջ, կապույտ աչքերով: Ուստի շատ զարմացա, երբ նա լրջորեն հարցրեց՝ ասացեք, իսկ դուք իրո՞ք հավատում եք, որ սեր կա: «Կհանդիպենք մի երկու տարի անց, ինքներդ կպատասխանեք այդ հարցին»,— ասացի ես: Այդպես էլ եղավ: Երկու տարի հետո կրկին հանդիպեցինք: «Դե՛, ի՞նչ եղավ սերը»,— հարցրի կատակով և շատ ավելի զարմացա, լսելով՝ սեր չկա, չի եղել և չի լինի: Բայց ես գիտեի, որ նա հանդիպել է տարբեր աղջիկների: Անցան տարիներ: Նա ամուսնացավ: Բաժանվեց: Կրկին ամուսնացավ, կրկին բաժանվեց: Վերջերս նորից հանդիպեցի նրան: «Ես կպատժեի բոլոր բանաստեղծներին, գրողներին, որոնք ամեն տեսակ հեքիաթներ են հորինում սիրո մասին,— զայրացկոտ ասաց նա,— հիմարություն է այդ ամենը»:

Իհարկե, այս եզակի դեպք չէ: Աղավաղված, այլանդակված պատկերացումները սովորաբար կյանքն ինքն է շտկում: Բայց մինչ այդ որքա՜ն վերքեր ու սպիներ է ստանում մարդը:

***

Կյանքում հաճախ է լինում մեկը սիրում է բուռն, ուժգին, ջերմ սիրով, իր շուրջը ստեղծում հուզական մի ամբողջ աշխարհ: Մյուսը նույնպես սիրում է: Բայց ինչպե՞ս. տաղտկալի, անկենդան: Չի՛ այրվում, հազի՜վ ջերմանում է: Եվ, չնայած այդ էլ սեր է, բայց անհրապույր, սառը: Իսկ որտեղի՞ց այդ զգացմունքը: Անշուշտ, մարդու մեջ շատ բան բնատուր է: Բայց հոգեբանների, մանկավարժների բազում փորձերը և պարզապես առօրյա կյանքն իսկ ցույց են տալիս, որ հուզականությունը կարելի է զարգացնել, բորբոքել զգացմունքների մարող կրակը: Եվ ամենից լավ է՝ այդ անել հենց մանկուց:

«Զգացմունքը,— ասել է Վ. Ա. Սուխոմլինսկին,— ...բարոյական վեհ արարքների կենարար ուժն է: Այնտեղ, ուր չկա շրջապատող աշխարհի զգայուն, նրբանկատ ընկալում, կլինեն անհոգի, անսիրտ մարդիկ: Երբեք չեն վերադարձվի կորսված մանկական տարիները»:

Եվ, իրոք, մայրական առաջին ժպիտը, մոր երգը, «զրույցը» մոր հետ— «աղո՜ւ-աղուն», «ղունղունալը», այս ամենն արդեն զգացմունքի զարգացում է: Սոցիոլոգ Ն. Շիմինը (Գորկի քաղաքից), ուսումնասիրելով մոր դերը երեխաների հուզաբարոյական զարգացման ոլորտում, հետաքրքրական տվյալներ է բերում: Մանկան երկարատև անջատումը մորից, հատկապես կյանքի առաջին 30 ամիսներին, զգալիորեն ուշացնում է երեխայի հուզաշխարհի, ինչպես և նրա մտավոր ունակությունների, հատկապես՝ խոսքի զարգացումը: Կյանքի առաջին տարիներին ծնողական գուրգուրանքից զուրկ երեխաներն ընտանեկան նորմալ պայմաններում մեծացած իրենց հասակակիցների համեմատությամբ ավելի անտարբեր, անվստահ են դառնում ուրիշների՝ մեծերի, երեխաների նկատմամբ: Ինչ խոսք, շատ բան պայմանավորված է մոր զգացմունքային կուլտուրայով: Նրա հոգևոր կյանքի հարստությունը, զգացմունքների արտահայտման անմիջականությունը, բարությունն ու մեղմությունը, այս ամենն անհամեմատ ավելի շատ են ազդում երեխայի վրա, քան խոսքը, խրատը, որոնք անմիջականորեն ուղղված են նրա բանականությանը:

Մանկան սիրտը բաց է սիրո համար: Ընտանիքում, ծնողների մոտ նա կլանում է սիրո կենարար շողերը: Ծնողական գուրգուրանքը, մայրական քնքշանքը, հոր բարի ժպիտը, այս ամենը սիրո դպրոց են նրա համար: Դրա պակասը կարող է հանգեցնել հոգու «սառնության», ըզգացմունքների աղքատության: Չէ՛ որ այդ աղջիկներին ու տղաներին սպասվում է հանդիպման, որևէ մեկին «սիրելիս», «ամուսին» կամ «կին» կոչելու պահը: Նրանց հոգին պետք է բոցավառվի սիրո կրակով, որը պիտի ուղեկցի ողջ կյանքում: Որտեղի՞ց քաղել այդ ջերմությունը, եթե մանկուց կայծը չի նետվել նրանց հոգում:

Երեխայի վրա մեծ է նաև ծնողներին իրար կապող զգացմունքի ազդեցությունը: Երեխայի անհատականությունը ձևավորվում է ամենից առաջ հոգեբանական այն մթնոլորտում, որ ստեղծում են ամուսինները: Այդ մթնոլորտն ընտանեկան երջանկության զգացմունքային նախահիմքն է: Խոսքը հատկապես ամուսինների՝ այդ երկուսի սիրո մասին է: Երբ հայրն ու մայրը սիրում են իրար, երեխան, ասես, համակվում է նրանց սիրով: Բայց ահա չքանում է ծնողների սերը, և աշխարհը սառչում է ո՛չ միայն մեծերի, այլև երեխաների համար: Ձևականորեն գոյատևող այսպիսի ընտանիքում իշխում է երեխայի համար հույժ վտանգավոր, նրա հոգին խեղող անբարյացակամության, փոխադարձ դյուրագրգռության ու անվստահության մթնոլորտ: Եվ որքան էլ ամուսինները ցանկան երեխաներից թաքցնել այդ, ցույց տալ, որ ամեն ինչ լավ է

ու կարգին, միևնույն է երեխան դյուրազգացորեն որսում է այդ շինծությունը:

Իսկական սերը միշտ բարձրացնում է ընտանեկան կյանքի տոնուսը, առաջացնում ուրախության զգացում: Երեխայի հոգեբանական զարգացման, նրա բարոյական դաստիարակության ամենանպաստավոր իրադրությունն է այն: Դրանից զատ, ծնողների իսկական սերը նմանակման հիանալի օրինակ է ապագա ընտանիքավորի համար:

Զգացմունքը դաստիարակվում է նաև ուրիշի ապրումները, ուրախություններն ու վիշտը հասկանալու կարողությամբ: Սովորեցնո՞ւմ եք արդյոք ձեր երեխաներին անտարբեր չլինել մյուս երեխաների վշտի նկատմամբ: «Սվետիկն այսօր ինչ-որ հեկեկում էր», պատմում է ձեր տղան իր օրվա տպավորությունները: «Մոտեցա՞ր, իմացա՞ր՝ ինչու»: «Այդ էր պակաս, աղջիկները միշտ էլ լացկան են»: «Բայց Սվետան փոքրիկ չէ, չէ՛ որ դուք արդեն յոթերորդ դասարանում եք»: «Հետո ինչ», «Ի՞նչ է, ես աղջի՞կ եմ, որ հետաքրքրվեմ նրա արցունքներով»: Այս խոսակցությունը ձեր տղայի հետ հասցրեք ավարտին: Համոզեք, որ ուրիշի վիշտը, մանավանդ նրա, որին ամեն օր տեսնում եք, չի կարող խորթ լինել: Այլապես այդ տղան կդառնա մի տղամարդ, որի մասին կասեն՝ «գոմշի կաշի ունի», նրբազգաց, բարեսիրտ, մարդամոտ չէ:

Հատկապես անհրաժեշտ է երեխաներին սովորեցնել ուշադիր լինել մեծահասակների նկատմամբ, որի կարիքը վերջիններս այնպե՜ս զգում են: Նման սովորությունը երեխային ակամա դարձնում է մարդկային, որը հետագայում՝ ընտանեկան կյանքում այնքան օգտակար կարող է լինել նրա համար: Չէ՛ որ ծերերի ու երիտասարդների միջև ծագած շատ անախորժությունների պատճառը հենց այն է, որ նորահարսը կամ նորափեսան չեն սովորել հարգալից վարվել մեծերի հետ և ո՛չ միայն հարգալից ու քաղաքավարի, այլև համակրանքով ու անկեղծ ակնածանքով:

Ուրիշ ինչպե՞ս հղկել, ջերմացնել զգացմունքները, ինչպե՞ս ավելի վառ պահել հուզաշխարհը: Թերևս բնության, արվեստի ու գրականության օգնությամբ: Բնությանը համեմատաբար անսովոր քաղաքաբնակները դեռևս միշտ չէ, որ կարողանում են լավ ընկալել այն: Խոսքս հատկապես բնությանը ձուլվելու, նրա գույներով, ձայներով, բուրմունքով արբենալու մասին է: Մինչ բնությունը,— եթե միայն կարողանում ես ըմբոշխնել այն,— զգացմունքների հզոր աղբյուր է:

* * *

Ընտանիքը միայն զգացմունքների աշխարհ չէ: Այն նաև կենցաղային հոգսերի ու կարիքների մի կարևոր ոլորտ է:

Մի անգամ ամուսնական պալատում առիթ ունեցա հարցազրույց ունենալու երիտասարդների հետ. ջահել ամուսիններ էին, որոնք շուտով սկսելու էին ինքնուրույն ընտանեկան կյանք:

Հարցումներիս մեջ կային և այնպիսիները, որոնք կապված էին կենցաղային կյանքի, նրանց նախապատրաստ լինելու հետ: Ինչպիսի՞ն է դրամական բյուջեն, ինչպե՞ս են պատկերացնում տնտեսական հոգսերը, ինչպե՞ս էին մտադիր կիսելու տնային այդ հոգսերն ու պարտականությունները: Այդ ամենի մասին նրանք խոսում էին անհոգ: Հանուն ճշմարտության ասենք, որ բնակարանի մասին ամենից շատ էին մտածում: Բայց ասենք նաև, որ զրուցակիցներիցս գրեթե ոչ մեկը չկարողացավ պատասխանել այն հարցին, թե ինչպե՛ս պետք է բաշխել իրենց ունեցած դրամը, նույնիսկ այն դեպքում, երբ այդ գումարն իրենց լավ հայտնի է: Երիտասարդ ամուսինները խիստ աղոտ էին պատկերացնում իրենց սպասվող տնտեսական հոգսերը: Մի երիտասարդ համոզում էր ինձ, թե տնտեսական գործը նրա համար նորություն չէ. ինքը կարող է հարկ եղած դեպքում և՛ վառարան վառել, և՛ ջուր բերել, և՛ փայտ կրել: Իսկ երբ հարցրի, թե նրանք կնոջ հետ որտե՞ղ են ապրելու, պարզվեց, որ քաղաքում, ժամանակակից բնակարանում, ուր կա և՛ կենտրոնական ջեռուցում, և՛ գազ, և՛ իհարկե՝ սանհանգույց:

Սոցիոլոգներ Լ. Գորդոնի և Է. Կլոպովի տվյալներով՝ ընտանիքի կազմավորմամբ տղամարդը տնային գործերով առաջվանից երկու անգամ ավելի շատ է զբաղվում, իսկ կինը՝ մեկուկես անգամ: Սակայն այս ամենևին չի նշանակում, թե տղամարդիկ ավելի շատ են աշխատում տանը: Պարզապես մինչև ամուսնանալը տնային գործերով նրանք ամենևին չեն զբաղվել: Այն ռեալ ժամանակը, որ կորցնում է երիտասարդ կինը կերակուր պատրաստելու, աման լվանալու, բնակարանը, հագուստներն ու կոշիկները կարգի բերելու վրա, շաբաթական, միջին թվով, կազմում է 24—25 ժամ: Ամուսինը տնային գործերով զբաղվում է մոտ 12 ժամ: Այդ զբաղմունքները, բնականաբար, ավելանում են մանկան աշխարհ գալով: Մեծանում է նաև տղամարդու ու կնոջ միջև տնտեսական ժամանակի տարբերությունը:

Տնային գործերին, երեխաներով զբաղվելուն հատկացվող ողջ ժամանակի ավելի քան երեք քառորդը բաժին է ընկնում կնոջը: Հենց այս անհավասարությունն է ընտանեկան երջանկու-



թյանն սպառնացող վտանգի աղբյուրը: Սոցիոլոգները տագնապով են խոսում երիտասարդ կանանց հոգեբանական ընկճվածության մասին, որոնց ուսերին է տնտեսական հոգսերի մեծ մասը: Մինչդեռ չամուսնացած երիտասարդների ու աղջիկների ապրելակերպում տարբերությունները շատ քիչ են: Երկուսն էլ սովորում են (ընդ որում, աղջիկները հաճախ կրթական ավելի բարձր մակարդակ ունեն): Երկուսն էլ մասնագիտություն են ստանում: Հավասարաչափ կարդում են, կինո, թատրոն հաճախում, մասնակցում տուրիստական արշավներին: Եվ ահա իրավական, փաստական և, որ գլխավորն է, հոգեբանական նման հավասարությունից հետո երիտասարդ կինն ընկնում է կենցաղային անհավասարության վիճակում: Հենց այս պատճառով ծագում են ընտանեկան բախումները:

Իրոք, ինչո՞ւ հենց երիտասարդ ամուսինների մոտ է լինում ընտանեկան գործերի այսպիսի անհավասար բաշխում: Ինչո՞ւ շատ երիտասարդ կանայք լուռ ու մունջ, կամ գրեթե լուռ ու մունջ, ստանձնում են տնտեսական գործերի ոչ թեթև բեռը, իսկ շատ ամուսիններ անհարմար էլ չեն զգում: Որովհետև այդպես է եղել դարեր ի վեր: Այս սովորույթը գալիս է այն ժամանակներից, երբ տղամարդն ընտանիքի միակ կերակրողն էր, իսկ կինը՝ տնտեսուհին: Տղամարդու համար սահմանված էր աշխատանքը, իսկ կնոջ՝ ընտանեկան օջախը: Վաղուց է խախտվել այս պատկերացումը, վաղուց արդեն մեզ մոտ կինն աշխատում է տղամարդուն հավասար, բայց դեռևս առաջվա նման, ոմանք գտնում են, որ կնոջն է վիճակված տնային կյանքի կարգավորումը:

Ուֆայի չորս դպրոցների ութերորդ դասարանցիներին սոցիոլոգներն անկետաներ են բաժանել: Պարզվեց, որ տղաները կիրակի օրերին երեք անգամ ավելի շատ են լինում տնից դուրս, իսկ կենցաղային գործերի վրա ծախսում են երկու-երեք անգամ պակաս ժամանակ, քան աղջիկները: Եթե աղջիկներին վարժեցնում են նրանց ուժերին համապատասխան աշխատանքի, ապա տղաներին, որպես կանոն, բաժին են ընկնում զվարճալիքները: Գիտնականները հարցում արեցին նաև ծնողներին: Պարզվեց, որ շաբաթը երկու հանգստյան օր ունեցող հայրերի ու մայրերի թիվը գրեթե հավասար է: Չնայած դրան, ամեն մի երրորդ հայր ընտանիքում չի զբաղվում տնային գործերով և նույնը չի սովորեցնում որդիներին: Հետազոտությունների ղեկավարը՝ Վ. Պոպովը, հանգում է ճիշտ եզրակացության. «Նման «անմեղ» եղանակով նոր սերնդի գիտակցության մեջ պահպանվում է տղամարդու և կնոջ միջև տնային աշխատանքի նահապետական բաշխումը»:

Որքա՜ն հեշտ կլիներ մեր երեխաների հետագա կենցաղային կյանքն ընտանիքում, եթե նրանց սովորեցնեինք արագ, մեխանիկորեն, առանց ավելորդ ջանքերի կատարել թեկուզ և տնային գործերի մի մասը:

Այլապես... Այլապես կենցաղը կմարի ամենաուժեղ զգացմունքները, ամենաբարի ցանկություններն իսկ:

Ահա թե ինչպես է լինում այդ: Ջահել ամուսին, ջահել կին: Նրանք սիրատենչ հայացքներ են փոխանակում: Ցանկանում են միասին հյուր գնալ, լինել թատրոնում, իսկ շաբաթ ու կիրակի օրերին մեկնել տուրարշավի: Իսկ տանը գործերը կուտակվում են, կուտակվում: Վաղուց արդեն պետք է հատակը փայլեցնել, կահույքի փոշին մաքրել, լվացք անել: Սկզբում թվում է, թե այդ բոլորը դատարկ բան է, կարելի է հետո էլ անել, իսկ հետո՝ ա՜յ քեզ բան— որտեղի՞ց այսքան գործ: Եվ արդեն զբոսանքի փոխարեն՝ հիմնավոր մաքրություն: «Արի հեռուստացույց նայենք», «Ի՜նչ ես ասում, մի ամբողջ օրվա լվացք ունեմ»: Եվ, ահա, ծիծաղի, կատակի, հանգստի փոխարեն մտահոգություններ, հոգնություն: Այս ամենը տասնապատկվում է երեխայի աշխարհ գալով: Այս անգամ արդեն գործերը շատ-շատ են և հետաձգել դրանք չի կարելի: Երեխան պետք է կուշտ լինի, տեղը՝ չոր ու մաքուր:

Տնտեսությունը վարել չգիտցող որքա՜ն մայրեր կան, որոնց մայրական հաճույքի բերկրանքը մթագնում են ծանր, հոգնեցնող գործերը: Իսկ որքա՜ն ջահել հայրեր վրդովվում են իրենց կանանց անճարակության, դանդաղկոտության համար, փոխանակ նրանց հետ միասին կատարելու այդ բթացնող, ձանձրալի աշխատանքը:

Բայց լինում է և այսպես. տանտիրուհիներ գիտեմ, որոնց համար տնային գործերով զբաղվելն ու սովորույթը վեր է մնացած բոլոր հետաքրքրասիրություններից: Այդպիսի կինն առավոտից իրիկուն միայն մաքրում, լվանում, թափ է տալիս, փայլեցնում, կարգի է բերում: Եվ այդ զբաղմունքների մեջ կորցնում ամուսնու, բարեկամների, երեխաների հետ շփվելու անհրաժեշտության զգացումը: Կորցնում է գիրք կարդալու կամ զբոսնելու ցանկությունը: Ամեն օր նրան թվում է, թե ահա հիմա կերակուրը կպատրաստի, լվացքը կանի, կկարկատի ու այն ժամանակ...

Բայց «այդ ժամանակն» այդպես էլ չի գալիս: Այսպիսի տուն հյուր գնալ էլ չես ուզում, չնայած այնտեղ ամեն ինչ կոկիկ է: Ամուսինները պիտի ջանան ձեզ լավ կեղակրել, խմեցնել, իսկ դուք, միևնույնն է, կձանձրանաք:

Երեխաներին տնարարություն պետք է սովորեցնել ամենևին ոչ նրա համար, որ հետագայում նրանք միայն դրանով զբաղվեն: Ընդհակառակը, երիտասարդները պետք է սովորեն հանրօգուտ աշխատանքում ազատ ժամանակ

գտնել բովանդակալից, լիարժեք հանգստի համար ևս: Այլ խոսքով՝ կարևորը միայն ժամանակը չէ:

Մի անգամ Երևանում ես ծանոթացա ինժեներ Դորա Մանուկյանի հետ. երկու մեծահասակ երեխաների մայր, չափազանց զբաղված մարդու կին, ինքը ևս զբաղված, բայց քաջատեղյակ է կուլտուրական կյանքի գրեթե բոլոր իրադարձություններին: Նա կարդում էր գրական բոլոր ուշագրավ նորույթները, դիտում թատրոնների ամենահետաքրքրական պրեմիերաները, մասնակցում գեղարվեստական ցուցահանդեսների փակ դիտումներին և, իհարկե, բաց չէր թողնում սիրած արտիստների հյուրախաղերը: Դորա Մանուկյանին հարգում են աշխատավայրում՝ որպես լավ մասնագետի: Իսկ տանը միշտ ժամանակին պատրաստ է ճաշը, սպիտակեղենը՝ լվացված, իսկ ձմեռվա համար՝ ամեն տեսակ պահածոներ, թթուներ, մուրաբաներ... «Ինչպե՞ս եք այս բոլորը հասցնում, Դորա»,— անկեղծ զարմանքով հարցրի ես: Նա մտածմունքի մեջ ընկավ: Հավանաբար, ինքն էլ առաջին անգամ փորձեց հասկանալ, թե ինչպե՞ս: Ապա հանկարծ ասաց. «Գիտեք, եթե լվացքի ամենաթեժ պահին իմանամ, որ մոտակա կինոթատրոնում ֆիլմ է ցուցադրվում, որը պետք է դիտել, կարողանում եմ ահա այսպես անել...» ու նա թափ տվեց ձեռքերն այնպես, ասես օճառափրփուրն էր թափում: «Եվ որքան էլ զբաղված լինեմ տնային գործերով,— շարունակեց նա,— կարողանում եմ ամեն ինչ թողնել, գնալ ներկայացում, ցուցահանդես, համերգ: Ամեն ինչ չես հասցնի... Այլ կերպ հնարավոր չէ: Տնտեսությունը քեզ կկլանի, կդառնաս խավարամիտ, հարազատ երեխաներիդ հետ խոսելիք չես ունենա»:

Ահա բովանդակալից հանգստի այս սովորույթը, իմ կարծիքով, հույժ կարևոր է: Ըստ երևույթին այն մշակվում է շատ ավելի վաղ, քան մարդը մտադրվում է ընտանիք կազմել:

***

Մեր աղջիկներն ու տղաները, որդիներն ու դուստրերը, նրանք, որոնց այնպես երես ենք տալիս, որոնք այնքան զգում են մեր քնքշանքի ու խրատների կարիքը, շուտով, մեր կարծածից շատ ավելի շուտ, նույնպես ծնողներ կդառնան: Ուրեմն այժմվանից պետք է մտածենք այդ մոտակա ապագայի մասին:

Դպրոցի շրջանավարտների բանավեճերում հաճախ են խոսում երջանկության, հետաքրքրական մասնագիտության, սիրած գործի, ճանապարհորդությունների, լավ բարեկամների, սիրո մասին: Բայց երեխաների՝ որպես երջանկության կենդանի մարմնացումների մասին գրեթե երբեք չեն խոսում:

Կարելի էր չանհանգստանալ, հույսը դնելով ժամանակի վրա, ոչինչ, նրանք դեռ կապրեն մայրության, հայրության այդ զգացումը: Գիտենք, թե ինչպես են տենչում երեխա ունենալ մոտ 30 տարեկան կանայք, փոքր-ինչ ավելի ուշ՝ տղամարդիկ, քանի դեռ չունեն: Բայց բանն էլ հենց այն է, որ մեծ մասամբ մայր ու հայր դառնում են ոչ թե մոտ 30, այլ մինչև 20 տարեկանը կամ դրանից մի փոքր անց: Նրանց, հատկապես տղաների, ծնողական բնազդները դեռ զարգացած չեն: Հետևապես, նշանակում է նրանց մտքերը պետք է ուղղել այդ հունով: Մենք պարտավոր ենք այնպես դաստիարակել նրանց, որ դառնան սիրող ծնողներ, իրոք մանկավարժներ: Այժմ առավել զգալի է նման դաստիարակության պակասը:

Ահա թե ինչու ապագա ծնողների դաստիարակությունը պետք է սկսենք որքան հնարավոր է վաղ: Առաջին հայացքից թվում է, թե աղջիկների՝ ապագա մայրերի, դաստիարակումն այնքան էլ բարդ չէ: Մայրության բնազդը նրա մեջ երևան է գալիս դեռ մանկուց, երբ նա տիկնիկ է խաղում— օրոր ասում, կերակրում, «դաստիարակում»: Ո՛չ միայն տիկնիկների, ընկերուհիների հետ ևս աղջնակն սկսում է «մայր ու աղջիկ» խաղալ: Բայց այս ամենն իր ժամանակն ունի: Հետո տիկնիկն այլևս չի հետաքրքրում նրան: Եվ դեռահաս աղջիկը մոռանում է իր այդ բնական պահանջի— խնամելու, հոգալու, գուրգուրելու, դայակության մասին: Բայց ահա դպրոցն ավարտելուց 1—2, նույնիսկ 3—4 տարի անց նա մայր է դառնում և... ինչպե՞ս հաճախ անհրազեկությունը մթագնում է այդ սքանչելի վիճակը: Տեսել եմ, թե ինչպես նորաթուխ մի մայր գիշեր-ցերեկ չէր բաժանվում Ջեր երեխան չեխերեն գրքույկից: Երեխայի բարուրելուց, կերակրելուց, լողացնելուց առաջ նա թերթում էր համապատասխան էջը և ճշգրտորեն կատարում հանձնարարականները: Այս վատ չէ, ուղղակի մի փոքր ծիծաղելի է և մի քիչ էլ՝ տխուր. չէ՛ որ կարելի էր նորածիններին խնամելու հմտությունը ձեռք բերել մինչ այդ: Մի՞թե չի կարելի բարձր դասարանցի աղջիկներին սովորեցնել այն ամենը, ինչ շուտով նրանց ցույց են տալու կանանց կոնսուլտացիաներում ու ծննդատներում:

Սակայն հիմնականը ապագա մայրերի դաստիարակության գործում թերևս միայն գիտելիքները չեն: Արդեն ասացինք, թե որքա՞ն մեծ է մոր ազդեցությունը երեխայի հուզաշխարհի, նրա զգացմունքների, հոգու վրա: Ուրեմն ապագա մոր դաստիարակության ընթացքում առավել ուշադրություն պետք է նվիրել նրա հոգատարության, բարության, մեղմության ու սիրալիրության զարգացմանը: Եթե կինը մինչև ծննդաբերելը չի զգացել մայրության բնազդը, ապա այն առավել ուժգին անպայման կբռնկի նրա հոգում, երբ առաջին անգամ կրծքին կսեղմի մանկան տաք բարուրը:

Հայրերի հարցն ավելի բարդ է: Երեխայի նկատմամբ նրանց վերաբերմունքում ավելի քիչ է բնաբուխ հուզականությունը, ավելի շատ՝ բանական կապվածությունը: Բայց հազիվ թե հարկ կա ասելու՝ որքան մեծ է հոր ազդեցությունը և՛ որդու, և՛ դստեր վրա: Հանձին հոր, որդին տեսնում է ընդօրինակման կերպար, աղջիկը՝ հուսալի հենարան, հավատարիմ պաշտպան, ավելի հաճախ՝ ամուսնու չգիտակցված իդեալ: Ահա թե ինչու այնպես մեծ է հոր պատասխանատվությունը:

Իհարկե, լավ է, երբ ընդօրինակման կերպարը խելացի, բարի, ուժեղ, ուշադիր, միշտ որդու կողքին է: Այնժամ, հավանաբար, մեծանալով, հայր դառնալով, նա ակամա կջանա նմանվել նրան: Ցավոք, հետազոտությունները ցույց են տվել, որ դեռևս ոչ բոլոր հայրերն են մոտենում այդ կերպարին:

Զ. Ա. Յանկովայի հետազոտություններով հաստատվել է, որ դաստիարակչական գործի 65 տոկոսը կատարում է միայն մայրը: Տարբեր դասարանների ավելի քան 1000 աշակերտների տրված հարցերի պատասխաններից մանկավարժ Վ. Ջայցևը պարզեց. երեխաների 94 տոկոսը գտնում է, թե իրենց վրա ազդում է միայն մայրը: Ուստի ապագա ծնողների նախապատրաստման պրոբլեմը առավելապես վերաբերում է տղաներին:

Կարլ Մարքսն իր արտակարգ զբաղվածությամբ, գործերի մեջ մտասույզ թաղված, միշտ մնում էր հոգատար ամուսին և օրինակելի հայր: Ահա ինչ է հիշում այդ մասին Պոլ Լաֆարգը. «Պետք էր Մարքսին տեսնել տանը, ընտանիքում, երբ նա մի կողմ էր դնում գրքերն ու տետրերը, կամ կիրակի օրերին, երեկոյան՝ ընկերների շրջանում, հասկանալու համար ծեր գիտնականի կերպարը, նրա սիրտը և սիրել նրան:

...Մարքսը մեղմաբարո, ներողամիտ հայր էր. «Երեխաները պետք է դաստիարակեն իրենց ծնողներին»,— երբեմն ասում էր նա: Հայրական իշխանության ստվեր իսկ չկար նրա վարմունքում, իր աղջիկների հանդեպ, որոնք արտակարգ կապված էին նրան: Նա երբեք նրանց ոչինչ չէր հրամայում, եթե որևէ բան էր ուզում նրանցից, խնդրում էր իբրև շնորհ, կամ էլ համոզում էր հրաժարվել իրեն անցանկալի որևէ բանից: Եվ այդուհանդերձ, հազվադեպ էր հորը հաջողվում հասնել առավել հնազանդության: Դուստրերի համար նա ընկեր էր...

Մարքսը երբեմն ամբողջ ժամերով խաղում էր երեխաների հետ... Կիրակի օրերին երեխաները նրան չէին թողնում աշխատել: Նա ամբողջ օրը նրանց տրամադրության տակ էր»: Ու գիտենք, թե որքան ջանքեր են գործադրել Մարքսն ու նրա կինը՝ Ջեննին, երեխաների հոգեկան աշխարհի զարգացման համար: Մինչդեռ ընտանիքը կյանքի մեծ մասն ապրել է աղքատության մեջ:

Փոխադարձ և անկեղծ սերը, գաղափարների ներդաշնակությունը, ինչպես և անդուլ աշխատասիրությունը եղել են և կմնան սովետական ընտանիքի ամրապնդման ու զարգացման հաստատուն սյուները: Այս առումով Կ. Մարքսի ընտանեկան կյանքը մնում է մեզ համար համակող իդեալ: Ահա թե ինչու ծնողներն ու մանկավարժները կոչված են՝ ջանքեր գործադրելու նոր կյանքի այդ երեք գործոնները մեր երիտասարդության երջանկության հիմքերի հիմքը դարձնելու համար:

Հիշենք նաև Ուլյանովների ընտանիքը, որին բազում էջեր են նվիրել մեր ճանաչված գրողները, ժամանակակիցները: Այստեղ պարզապես ցանկանում ենք շեշտել, որ այդ գեղեցիկ ընտանիքում իշխում էր այն ողջ առաջադիմականն ու մարդկայինը, որ տոգորված էր ապագա հեղափոխականների անձնական խառնվածքը, ինքնատիպ գործելակերպը: Ուլյանովների ընտանիքի անդամները մարդ էին բառիս բուն իմաստով. այն, ինչ մարդկային էր, խորթ չէր նրանց, սակայն օժտված էին մի զարմանալի հատկանիշով— նրանց անսահման մտահոգում էր աշխատավորի ճակատագիրը, ընչազուրկների սոցիալական ազատագրումը:

Կարելի է բազում օրինակներ բերել նաև մեր ժամանակակից, իրենց երեխաների խելացի, հմուտ դաստիարակ հայրերից: Կարևորն է հասկանալ, որ ընտանիքում այսօր տղամարդուց պահանջվում են ավելի շատ ժամանակ ու հոգեկան ուժ:

Եթե հին նահապետական ընտանիքում հոր հեղինակությունը համարվում էր ինչ-որ բնական, աստվածատուր մի բան, ապա այժմ այդպես չէ: Տնեցիների հարգանքը պետք է նվաճել: Իսկ այդ հեշտ չէ: Եթե ընտանիքի գլխավորը չի կարողանում պատասխանել տեխնիկային, ընթացիկ քաղաքականությանը, սպորտին վերաբերող հարցերին... եթե հանգիստ, խելացի վերաբերմունքի փոխարեն նրանից տանը միայն կոպտություն են տեսնում... եթե կինը, երեխաները տառապում են նրա անտաշությունից, եսամոլությունից... նման հայրը չի կարող հեղինակություն վայելել և, որ ամենակարևորն է, չի կարող հավակնել ընտանիքի ղեկավարը լինել: Որովհետև ընտանիքի կուլտուրական հետաքրքրությունները, կրթության ձգտումը, ըն-

թերցասիրությունը, արվեստը հասկանալը, այս ամենն զգալիորեն պայմանավորված է ամուսնու, հոր այդ հատկանիշների զարգացման մակարդակով: Դրանցից զատ, տան գլխավորը պետք է լինի կազմակերպված, գործունյա, կարգապահ, տանը համերաշխության ու բարեկամական մթնոլորտ ստեղծելու համար: Միաժամանակ նա պետք է ուշադիր ու նրբանկատ լինի տնեցիների գործերի ու տրամադրության նկատմամբ: Այլապես նա չի կարող լինել նրանց իսկական բարեկամը:

***

Մարդուն ընտանեկան կյանքի նախապատրաստել, իհարկե, չի նշանակում նրան պարզապես հաղորդել որոշակի գիտելիքների պաշար: Խնդիրն ավելի բարդ է. անհրաժեշտ է մեր զավակներին համակել այն համոզմամբ, որ ամուսնությունը, ընտանիքը պահանջում են ամենալուրջ, պատասխանատու վերաբերմունք: Նրանք պետք է ունենան գիտական աշխարհայացք, կայուն զգացմունքներ, որոնք թելադրեն նրանց ճիշտ ընտրություն և իրենց այդ ընտրությամբ ստեղծված ընտանիքի քայքայման անհնարինություն: Նրանց պետք է դաստիարակենք իր, ամուսնու, կնոջ, երեխաների և, անշուշտ, հասարակության նկատմամբ գիտակցված պատասխանատվության ոգով:

Ե՛վ դպրոցում, և՛ տանը խելացի, կազմակերպված ընտանեկան այս դաստիարակությունն ենք համարում ընտանիքի ամրության, հաստատունության, կենսունակության առհավատչյան:

МՈՍԿՎԱ



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.
**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 07351 Պատվեր 525 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 4/IV 1978 թ. ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*



# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Գ. ԱՅՎԱԶՅԱՆ— ՍՄԿԿ XXV համագումարը և կուսակցական շինարարության մի քանի հարցեր: *«Հայաստան» հրատ., 1977:*

ՍՄԿԿ քաղաքականության ակտուալ հարցերը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ— Արդի բուրժուական գաղափարախոսության քննադատական ուրվագծեր: *Գիրք 1: «Հայաստան» հրատ., 1977:*

Կ. ԽՈՋՈՅԱՆ— Գիտական որոնումների և ներդրումների ճանապարհին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Գ. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ— Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի 60-ամյակին: *Ե., «Գիտելիք» հրատ., 1977:*

Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ— Աշխարհայացքի տեղը նոր մարդու հոգևոր զարգացման գործում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Սոցիալիզմը և աշխատանքը: *Դասագիրք բանվորների համար: «Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ԼՈՒԿ— Սովորեցնել մտածել: *Ե., «Լույս» հրատ., 1977:*

**К. МАРКС, Ф. ЭНГЕЛЬС, В. И. ЛЕНИН—О** женском вопросе. Изд. 2-е, М., Политиздат, 1978.

**Л. И. БРЕЖНЕВ — Ленинским курсом.** Речи и статьи. Том шестой. М., Политиздат, 1978.

**Л. И. БРЕЖНЕВ — Малая земля.** М., Политиздат, 1978.

**Конституция развитого социализма.** М., Политиздат, 1978.

**Л. ФОТИЕВА — Встречи с В. И. Лениным в Женеве и Париже.** М., Политиздат, 1978.

**В. КАРПИНСКИЙ—Ленин как редактор.** М., Политиздат, 1978.

**Советская интеллигенция.** Краткий очерк истории (1917—1975 гг.), М., Политиздат, 1978.

**Положение в области прав человека в США.** Публикация Коммунистической партии США. Пер. с англ. М., Политиздат, 1978.

**И. ТИМЧЕНКО — К духовной свободе.** Социальные и идеологические проблемы преодоления религиозности женщин. М., Политиздат, 1978.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԻՐԱՀԱՏՈՒՄԸ ԲՈՒԺՈՒՄ Է ԳԵՐՃՆՇՈՒՄԸ

*Մոսկվայի Ն. Ի. Պիրոգովի անվան № 2 բժշկական ինստիտուտի ուրոլոգիայի և օպերատիվ նեֆրոլոգիայի կլինիկայի գիտնականներն աշխարհում առաջին անգամ կատարեցին երիկամների երկկողմ փոխպատվաստում։ Այն օգնում է երիկամային զարկերակի նեղացման ժամանակ առաջացած գերճնշման վերացմանը։ Վիրաբույժները երիկամները՝ անոթների հետ, հանում են, վերակառուցում դրանք հիվանդի օրգանիզմից դուրս, և ապա, ինչպես պետք է, կարում են զստափոսում։ Երիկամներում վերականգնվում է արյան նորմալ շրջանառությունը, և հիվանդն ազատվում է գերճընշումից։ Բուժման նոր եղանակը կիրառվում է Միության բուժհիմնարկներում։*

## ՓԱԹԵԹԱՎՈՐՄԱՆ ԱՎՏՈՄԱՏ

*Այն պոլիէթիլենային ժապավենից պատրաստում է փաթեթներ, պարկեր, ապա լցնում և ծրարում է թափվող մթերքները։ Նոր մեքենան սպասարկում է ընդամենը մեկ մարդ, բայց մեկ րոպեում այն փաթեթավորում է 150 պարկ։ Ընդ որում, ավտոմատը բանելու ժամանակ հեշտությամբ կարելի է կարգավորել բեռնավորման ծավալը։ 0,1—0,2* **մմ** *հաստությամբ ժապավեններից պատրաստված փաթեթներն ամուր են, հերմետիկ։ Շաքարավազ, կրուպա, ալյուր, գյուղատնտեսական հատիկավոր կուլտուրաներ կամ պարարտանյութ կշռող ու փաթեթավորող միայն մեկ նման ավտոմատի շնորհիվ հայրենական ձեռնարկությունը տարեկան կտնտեսի մոտ 700 հազար ռուբլի։*

## ԱԼԼՈ՜, ԶԱՆԳԱՀԱՐՈՒՄ ԵՆ ԼԵՌՆԱԳԱԳԱԹԻՑ

*Լեհական Մենդզիլես քաղաքի կապի ինստիտուտի մասնագետները մշակել են մշտական և բաժանորդային ռադիոհեռախոսակապի նոր եղանակ։ Երկու կոմպլեկտ ապարատներից կազմված այդ սիստեմը հնարավորություն է ընձեռում տրնտեսական նոր կառուցվող օբյեկտները հեշտ ու արագ միացնելու քաղաքի հեռախոսացանցին, մանկական ամառային ճամբարների, քեմպինգների և ճանապարհաշինարարական տեղամասերի հետ հաստատելու ժամանակավոր կապ։ Այն անփոխարինելի է հեռավոր փարոսներում, կղզիներում, լեռներում աշխատողների հետ կապ ունենալու համար։*

## ԳԵՐԶԳԱՅՈՒՆ ԳԱԶԱՆԱԼԻԶԱՏՈՐ

*Ո՛չ միայն ոսկեբեր, այլև պղնձի, բազմամետաղ հանքերում մշտապես լինում է և սնդիկ։ Ցնդելով, սնդիկի գոլորշին թափանցում է հողի մեջ և մթնոլորտ։ Հատուկ գազանալիզատորները հոտով կամ օդի գույնով հայտաբերում են ոսկի կամ պղինձ։ Սակայն ոչ բոլոր սարքերն են բավական ստույգ ՚ զգայուն։*

*ՍՍՀՄ ԳԱ հազվագյուտ տարրերի հանքաբանության, երկրաքիմիական և բյուրեղաբանության ինստիտուտում վերջերս ստեղծվել է դյուրակիր ատոմակլանիչ գազանալիզատոր, որը «հոտոտում է» ոչ թե մթնոլորտի, այլ հողի օդը։ Բանն այն է, որ չնայած մետաղյա հանածոների հանքաշերտերի շուրջը եղած օդում կա և սնդիկի ամպ, սակայն սնդիկի խտությունը դրանում մեծ չէ։ Ուստի, ավելի լավ է նախ թեթևակի կպչել հողին· Փորվում է ոչ խոր պայթանցք և դրա մեջ մտցվում զոնդ՝ ոսկե սորբենտով (սորբենտը ոսկե թելով փաթաթված նիխրոմե մետաղալար է)։ Այն կլանում է սնդիկը, որսում հողի մեջ եղած օդի սնդիկի աննշան գոլորշիները, անջատում այն փոշուց և այլ գազերից։ Սկզբում պայթանցքից զոնդով արտամղում են օդը, ապա մինչև 600° C տաքացնում ոսկե թելը. այն արդեն տալիս է դեսորբացված սնդիկ՝ մթնոլորտային մաքուր օդում ճշգրիտ անալիզ կատարելու համար։*

*Նման սարքերը ճշգրիտ են և շատ բզգայուն, դրանք զգում են մեկ լիտր օդում հարյուրմիլիոներորդ միլիգրամ սնդիկի առկայությունն իսկ։*